## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն Յանձնախումբը շնորհակալութեամբ ստացած է Պ. Օննիկ Քէօլէեանէ հազար Ն. Ֆ., առատաձեռն եւ սրտաբուխ նուէրը ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան։

Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շընորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան.—

Պ. Յակոբ Թորիկեանէ յիսուն Ն. Ֆ., երիտասարդ Ալպէռ Տէր–Սարգիսեանի վաղահաս մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի հետեւեալ նուիրատուութիւնները եղած են եկեղեցւոյ շինութեան.—

Տիկին Բագարատ Մակարեանէ յիսուն Ն. Ֆ., Փարիզէն Պ. Արամ Պարոնեանէ քսան, Մարսէյլէն Պ. Աւետիս Տէր Մարկոսեանէ քսան, Մարսէյլէն Պ. Բ. Կիւլէսեանէ երեսուն, Տիկին Հայկանոյշ Մանուկեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի Ոմն տասը Ն. Ֆ.։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ
### ՍՏԻՊՈՂԱԲԱՐ

Կը փնտռուի Գարեգին Սարիբէկեան, Հօր անունը՝ Յովհաննէս։ Ծննդավայրը՝ Զակասպիսկի Կրայ քաղաքը, Աշխաբատ։ Ծննդեան թուականն է 1925։

Ռուսաստանի Օրիոլ քաղաքին մէջ, Գերմանացիներու կողմէ բռնի կերպով կ'ուղարկուի Գերմանիա, 1942ի Ապրիլին, պարտադիր աշխատանքի։ Աշխատանքի վայրն էր Պրեսլաուի գաւառներէն Շփանսպերկ։

1943ի Օգոստոսին կ'անհետանայ աշխատանքի վայրէն եւ մինչեւ այսօր անհետ կը մնայ։

Երկրորդ աշխարհամարտի լրումէն ետք, զինք տեսած են Ֆրանսայի մէջ։ Կ'ենթադրուի որ փոխած ըլլայ իր անունը։

Լուր ունեցողներէն կը խնդրուի անմիջապէս տեղեակ պահել հայրը,— Երեւանի գաւառի Սեւքար գիւղէն Յովհաննէս Սարիբէկեան։

Տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի դիմել «Յառաջ»։

Ծիշդ տեղեկութիւն տուողը, փնտռըւող Գարեգին Յովհաննէսի Սարիբէկեանի առաջին նամակէն յետոյ կը ստանայ կարեւոր նուէր մը։



## ԱԶԴ ՏՈՒՈՂՆԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Յառաջի վարչութիւնը նկատի կ'առնէ միայն կանխիկ վճարուած ազդերը։ Բոլոր ազդերու համար հարկ է նախապէս պայմանադրուիլ վարչութեան հետ։ Ստորագրութիւն չկրող եւ վարչութեան հետ համաձայնութիւն չունեցող կազմակերպութեանց ազդերը նկատի չեն առնուիր։

Թիւրիմացութեանց եւ սխալներու առաջքն առնելու համար, վարչութիւնը որոշած է հեռաձայնով ազդ չընդունիլ։ Ստիպողական բացառիկ պարագաներու՝ Յառաջի խմբագրութիւնը պատասխանատու չէ եթէ վրիպակներ պատահին։

«ՅԱՌԱՋ»Ի ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ
### ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Ֆ. Կապոյտ Խաչի օդափոխութեան կայանին արձանագրութիւնները կը սկսին, այս Երկուշաբթի (Ապրիլ 24)։ Դիմել Երկուշաբթի, Չորեքշաբթի, Ուրբաթ և Շաբաթ օրերը, ժամը 16էն 19, Կապոյտ Խաչի գրասենեակը 17 Րիւ Պլէօ։ Համաձայն պետական օրէնքին կ'ընդունուին աղջիկներ՝ 7էն 14 տարեկան, մանչեր՝ 7էն 13 տարեկան։

ԿԱՊ. ԽԱՉԻ ՇՐՋ. ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՏԱՐԵԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ
## ՎԵՆԵՏԻԿ—Ս. ՂԱԶԱՐ—ՀՌՈՄ
ԵՒ
### ՇՐՋԱԿԱՅՔԸ

Շաբաթ մը ծովի կեանք՝ Հանր. Սան Մարինոյի մօտ, Ադրիականի աննման աւազին վրայ, ծովեզերեայ նորաշէն եւ հանգստաւէտ պանդոկի մը մէջ։

ՄԵԿՆՈՒՄ՝ Օգոստոս, 6
ՎԵՐԱԴԱՐՁ՝ Օգոստոս, 31

Արձանագրութեանց եւ մանրամասնութեանց համար դիմել.—

Ն. ՄԱՅԻՍԵԱՆ
45, Rue de Trévise, PARIS (9e)
Tél. : TAI. 49-40
(Գաւիթին մէջ)

Յ. ՊԱՍՄԱՃԵԱՆ
11, Avenue Béranger
ARNOUVILLE-LES-GONESSE (S. et O)



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ
### Surprise Party

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Իսիի խանաւոր խումբի կողմէ։ Այս Կիրակի ժամը 17էն սկսեալ, ի նըպաստ Հայաստան ամսաթերթին։ Մշակութային Տան մէջ, 17 Րիւ Պլէօ Փարիզ։

**Bar Buffet**

ՈՒՐԱԽ ՋՈՒԱՐԹ ՄԹՆՈԼՈՐՏ

### ԳԻՆԵՋՕՆ

Կազմակերպութեամբ Առնուվիլ – Սարսէլի Հ. Յ. Դ. Վարդան ենթակոմիտէի եւ հովանաւորութեամբ Փարիզի Շրջ. կոմիտէին, մասնակցութեամբ Փարիզի մարմիններու։ Այս Շաբաթ իրիկուն, ժամը 20·30ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ, 17 Ռիւ Պլէօ։

Կը հրաւիրուին շրջանի ընկերները։

## Հ. Յ. Դ.
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՊԱՆԵԷՕ – ՔԱՇԱՆԻ Հ. Յ. Դ. «Արծիւ» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր ընկերները այս Չորեքշաբթի ժամը 20·30ին, ծանօթ հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ռուբէն Ռււ. Միութեան ժողովը Մայիս 5ին, Հայ Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ։

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 20·30ին, 101 Ավընիւ տը Սաքսի սրճարանի ներքնասրահը։ Կարեւոր օրակարգ։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Պանեէօ – Քաշանի Կրթ. Մարմինը կազմակերպած է դպրոցական տարեվերջի հանդէսը, խնամուած յայտագրով, Յունիս 4 Կիրակի օր։

## ՀԱՅԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԵՐ
### ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ
երգչախումբին կողմէ

### ՂԵԿ. Կ. ԱՓՐԻԿԵԱՆԻ
Կիրակի, Մայիս 7, ժամը 15·30ին

**Alfortville, Salle des Fêtes**

Յայտագրին մէջ, Կոմիտասի, Ալթունեանի, Ալէմշահի, Սարեանի եւ այլ հեղինակներու գործերը, որոնցմէ շատեր՝ առ աջին ունկնդրութիւն։

ՄԵՆԵՐԳՆԵՐ.—
ՆԱՀԱՊԵՏԵԱՆ ՔՈՅՐԵՐ
ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ (թենոր)
ԱՐԱ ՍԵՐՈԲԵԱՆ (պարիթոն)

Հանդէսին կը յաջորդէ, երգչախումբին

### ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ
Իսքեճնտիպ նուագախումբ

ՄՈՒՏՔ.— Համերգ եւ պարահանդէս՝ 5 Ն. Ֆ.։
Նախապէս ապահովել տեղերը, հեռաձայնելով

TRI. 77-22 Poste 62
Օր. Այտա Զաւրէնեանի

Autobus 103, Charenton-Ecoles, descendre Rue de l'Union - Parking

## ՍԱԿԱԳԻՆ ԸՆԹԱՑԻԿ ԱԶԴԵՐՈՒ
ՄԷԿ ԱՆԳԱՄՈՒԱՆ ՀԱՄԱՐ

| | | |
|---|---|---|
| ՄԱՀԱԶԴ | 30 Ն. Ֆ. | մինչեւ 1/4 սիւնակ |
| ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ | 15 Ն. Ֆ. | մինչեւ 1/8 սիւնակ |
| ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՀԱՐՍԱՆԻՔ, ՆՇԱՆՏՈՒՔ | 20 Ն. Ֆ. | » » » |
| ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆ | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ» | 10 Ն. Ֆ. | » » » |
| «ԿԸ ՓՆՏՌՈՒԻ» | 5 Ն. Ֆ. | » » » |
| ԾԱԽՈՒ Է | 20 Ն. Ֆ. | » » » |

Այս գինները մէկ անգամ հրատարակելի եւ նշանակուած ծաւալով ազդերու համար են։

Կանխիկ վճարումը պարտաւորիչ է։

Առեւտրական կամ այլ ազդերու մասնաւոր պայմաններուն համար դիմել Վարչութեան։

Պ. Համբարձում Ջահրճեան, Օր. Այտա Ջահրճեան, Տէր եւ Տիկին Արման Ջահրճեան եւ աղջիկը Շաքէ, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաները սրտի խոր ցաւով կը ծանուցանեն իրենց կնոջ, մօր, մեծ մօր եւ ազգականին՝

ՎԻՔԹՈՐԻԱ ՋԱՀՐՃԵԱՆԻ

(Ծնեալ Ստեփանեան)

յանկարծական մահը, որ տեղի ունեցաւ Ապրիլ 30ին:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի, այս Ուրբաթ ժամը 16·15ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Փանթէնի գերեզմանատունը:

Մահազդ ղրկուած չըլլալով, կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել:

## ՔԱՌԱՍՈՒՆՔԻ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՄԱՐՍԷՅԼ.— Այրի Տիկին Հայկուհի Թէրզիպաշեան եւ իր որդիները՝ Քրիստափոր եւ Գէորգ, կը ծանուցանեն Մարսէյլի հայ գաղութին, թէ այս Կիրակի, Պոմոնի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցին մէջ, առաւօտեան ժամերգութեան հետ, պատարագ–հոգեհանգիստ պիտի մատուցուի՝

Ողբացեալ ԱՐԱՄ ԹԷՐԶԻՊԱՇԵԱՆԻ հոգւոյն եւ յիշատակին համար:

(Նախագահ՝ Համազգային Մշակութային Ընկերութեան՝ Մարսէյլի մասնաճիւղին, Փարիզի Մշակութային Տան՝ Մարսէյլի մասնաճիւղին, Հ. Բ. Ը. Միութեան Մարսէյլի մասնաճիւղին, Անթալի Հայրենակցականին եւն.):

Ներկայ ազդը կոչ մըն է՝ հանգուցեալին յիշատակը յարգողներուն համար:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է.— Տէր եւ Տիկին Վահագն Իչգալաթեանէ հարիւր Ն. Ֆ., փոխան ծաղիկի ողբացեալ երէցկին, Վեհանոյշ Մերճանեանի մահուան առթիւ: Տիկին Աստղիկ Աչըքկէօզեանէ յիսուն Ն. Ֆ. իր quiկին, Տօքթ. Ռոպէր Աչըքկէօզեանի գինուորութենէ վերադարձին առթիւ:

## ՖՐԱՆՍԱՀ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՏՕՆԷ

Գրիգոր Զօհրապի ծննդեան հարիւրամեակը, Երկուշաբթի (Մայիս 8) ժամը 21ին, Ազգ. Տան թատերասրահը: Ֆրանսահայ լսարանը կը մասնակցի այս տօնակատարութեան:

## ՀԱՄԲԱՐՁՈՒՄ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը խնջոյք մը կը սարքէ իր դպրոցական աշակերտ–աշակերտուհիներուն համար, Համբարձման տօնին օրը: (Մայիս 11):

Այս առթիւ կը հրաւիրուին ծնողքները եւ բոլոր համակիրները:

## ՀԱՅԿ. ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպուած Մարսէյլի Կապոյտ Խաչի վարչութեան կողմէ:

Բեմադրութեամբ Տիկին Ա. Պէզիրճեանի:

Ի նպաստ Միութեան բարենպատակ ձեռնարկներուն:

Մայիս 20, Շաբաթ ժամը 21ին, Սալ Մազընոյի սրահին մէջ, 88 Րիւ տ'Օպանեը, Մարսէյլ:

Տեղւոյս լաւագոյն ուժերու կողմէ մեծ պատրաստութեամբ պիտի բեմադրուի՝

## ՍԱՅԱԹ ՆՈՎԱ

(Ազգ. յուզիչ օփերէթ, 4 արար)

Պարերու եւ խնջոյքի տեսարաններուն իր մասնակցութիւնը կը բերէ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի պարախումբը:

Արեւելեան «Սազանդար» նուագախումբը կը ղեկավարէ թառիստ ՊԱՐՈՅՐ:

Դաշնակահար Պ. ԱԲԻԿ:

Սրինգ՝ Պ. ՇԻՇՄԱՆԵԱՆ:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Փրովտիվէն (Պուլկարիա), Տիկին Անգնիւ Քէսէճեան (ծնեալ Կարմիրեան) Պոլսեցի կը փնտռէ իր զարմիկը Պ. Կարպիս Շիշմանեան որ նախապէս Փարիզ կը բնակէր եւ հասցէն էր 20 Րիւ Լէօն Ժիրօ, Փարիզ (19): Զինք ճանչցողներէն կը խնդրուի տեղեակ պահել Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ դիւանը, 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ (8):

## ԳԻՆԵՁՕՆ

Կազմակերպութեամբ Առնուվիլ–Սարսէլի Հ. Յ. Դ. Վարդան ենթակոմիտէի եւ հովանաւորութեամբ Փարիզի Շրջ. կոմիտէին, մասնակցութեամբ Փարիզի մարմիններու: Այս Շաբաթ իրիկուն, ժամը 20·30ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ, 17 Ռիւ Պլէօ:

Կը հրաւիրուին շրջանի ընկերները:

## ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ
## Surprise Party

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Իսիի խառնասեռ խումբի կողմէ: Այս Կիրակի ժամը 17էն սկսեալ, ի նպաստ Հայաստան ամսաթերթին: Մշակութային Տան մէջ, 17 Րիւ Պլէօ Փարիզ:

**Bar Buffet**

ՈՒՐԱԽ ՋՈՒԱՐԹ ՄԹՆՈԼՈՐՏ

ԻՏԱԼԻԱ ԵՒ ԱՒՍՏՐԻԱ

## ՎԵՆԵՏԻԿ - ԹԻՐՈԼ - ՎԻԷՆՆԱ

ԽՄԲԱԿԱՆ ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ

Վիէննայի Մխիթարեան Միաբանութեան 4 յոբելեաններուն առթիւ:

Օգոստոս 11 — Սեպտեմբեր 4

Ճամբորդութիւնը կը կազմակերպէ և խումբը կ'առաջնորդէ Հ. Սամուէլ Վ. Արամեան:

Մանրամասն տեղեկութիւններու համար դիմել՝

Առաւօտուն, ժամը 9 – 13՝

10 bis, Rue Thouin - PARIS (5e)

Tél. : ODEon 02-12

Կէսօրէ ետք, ժամը 13 – 17՝

E. DJEZIRIAN

27, Fbg. Montmartre, Paris (9e)

Tél. : PRO. 35-85

Արձանագրութիւնները կը փակուին Յունիս 30ին:



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՀԱՅ ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՀԱՂՈՐԴՈՒԹԵԱՆ ՕՐ

Համբարձման Տօնին առթիւ, յառաջիկայ Մայիս 11ին Հինգշաբթի օր, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը կազմակերպած է Հայ Մանուկներու Հաղորդութեան օր, Սերովբէ Եպիսկ. Մանուկեանի նախագահութեան տակ:

Փարիզի եւ շրջաններու բոլոր դպրոցներու աշակերտութիւնը կը հրաւիրուի ներկայ գտնուիլ հանդիսաւոր Ս. պատարագին եւ մասնակցիլ Ս. Հաղորդութեան:

Կը հրաւիրուի նաեւ Հայ հաւատացեալ հասարակութիւնը:

## Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ռուբէն Ուս. Միութեան ժողովը Մայս 5ին, Հայ Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ:

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 20·30ին, 101 Ավընիւ տը Սաքսի սրճարանի ներքնասրահը: Կարեւոր օրակարգ:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը այս Շաբաթ օր ժամը 21ին, Մշակ. Տան մէջ: Կարեւոր օրակարգ:

## ՀԱՅԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԵՐ

ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ

երգչախումբին կողմէ

ՂԵԿ. Կ. ԱՓՐԻԿԵԱՆԻ

Կիրակի, Մայիս 7, ժամը 15·30ին

**Alfortville, Salle des Fêtes**

Յայտագրին մէջ, Կոմիտասի, Ալթունեանի, Ալէմշահի, Սարեանի եւ այլ հեղինակներու գործերը, որոնցմէ շատեր՝ առ աջին ունկնդրութիւն:

ՄԵՆԵՐԳՆԵՐ.—

ՆԱՀԱՊԵՏԵԱՆ ՔՈՅՐԵՐ

ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ (թենօր)

ԱՐԱ ՍԵՐՈԲԵԱՆ (պարիթօն)

Հանդէսին կը յաջորդէ, երգչախումբին

## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Ինքնատիպ նուագախումբ

ՄՈՒՏՔ.— Համերգ եւ պարահանդէս՝ 5 Ն. Ֆ.:

Նախապէս ապահովել տեղերը, հեռաձայնելով

TRI. 77-22 Poste 62

Օր. Այտա Ջահրէճեանի

Autobus 103, Charenton-Ecoles, descendre Rue de l'Union - Parking

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Տէր եւ Տիկին Իփքրանեան յիշում Ն. Ֆ. կը նուիրեն Ս. Թէհլիրեան սրահին, իրենց նահատակ ծնողքին յիշատակին: (Ստանալ «Յառաջ»էն):

## ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Անտիլիի հանգստեան տան տնօրէնութիւնը իր եւ պատսպարեալներուն կողմէ ցաւակցութիւն կը յայտնէ Պարգեւ քհնյ. Մերձանեանի իր կնոջ մահուան առթիւ եւ փոխան ծաղիկի 25 Ն. Ֆ. կը նուիրէ Ալֆորվիլի եկեղեցիին: (Ստանալ «Յառաջ»էն):

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տիկին Գեղանոյշ Զօլաքեան եւ զաւակները Ժագ եւ Նուպար կը ծանուցանեն թէ այս Կիրակի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Ալֆորվիլի Ս. Պօղոս – Պետրոս եկեղեցին իրենց մօր եւ մեծ մօր՝ Տիկին Խոսրուվուհի Զիլտիրեանի մահուան քառասունքին առթիւ:

Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները:

×

Տէր եւ Տիկին Գէորգ Թորունեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Յովսէփ Շիրինեան եւ զաւակները, Վարդան, Դաւիթ Գրմըզեան (Պոլիս), Տէր եւ Տիկին Միհրան Ղազարեան (Տէսին), Տէր եւ Տիկին Մեսրոպ Ղազարեան եւ զաւակները (Տէսին), Պ. Յակոբ Թորունեան (Ամերիկա), Տիկին Սանդուխտ Թորունեան – Ռաֆայէլեան (Ամերիկա), կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց հօրեղբօր աղջկան, քրոջ, հօրաքրոջ եւ ազգականին ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՌԵՖԵԿԱ ԳՐՄԸԶԵԱՆԻ մահուան քառասունքին առթիւ, այս Կիրակի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ: Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները:

## ՔԱՌԱՍՈՒՆՔԻ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՄԱՐՍԷՅԼ.— Այրի Տիկին Հայկուհի Թէրզիպաշեան եւ իր որդիները՝ Քրիստափոր եւ Գէորգ, կը ծանուցանեն Մարսէյլի հայ գաղութին, թէ այս Կիրակի, Պօմոնի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցիին մէջ, առաւօտեան ժամերգութեան հետ, պատարագ – հոգեհանգիստ պիտի մատուցուի՝

Ողբացեալ ԱՐԱՄ ԹԷՐԶԻՊԱՇԵԱՆԻ հոգւոյն եւ յիշատակին համար:

(Նախագահ՝ Համազգային Մշակութային Ընկերութեան՝ Մարսէյլի մասնաճիւղին, Փարիզի Մշակութային Տան՝ Մարսէյլի մասնաճիւղին, Հ. Բ. Ը. Միութեան Մարսէյլի մասնաճիւղին, Այնթապի Հայրենակցականին եւն.):

Ներկայ ազդը կոչ մըն է՝ հանգուցեալին յիշատակը յարգողներուն համար:

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ԾՆՈՒՆԴ

Տէր եւ Տիկին Նուրհան Գարբիէլեան կը ծանուցանեն իրենց զաւկին՝

ՐԱՖՖԻ – ԹԱԹՈՒԼԻ

ծնունդը, Փարիզ, Ապրիլ 28, 1961:

## ՆՈՒԷՐ

Տիկին Պայծառ Շիրինեան կը նուիրէ հարիւր Ն. Ֆ. Աղքատախնամին՝ իր քրոջ Ռեբեկա Գրմզեանի եւ մօրեղբօր Նշան Գալտընեանի մահուան քառասունքին առթիւ: (Ստանալ «Յառաջ»էն):

## ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

**Surprise Party**

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Իսիի խառնուր խումբի կողմէ: Այս Կիրակի ժամը 17էն սկսեալ, ի նըպաստ Հայաստան ամսաթերթին: Մշակութային Տան մէջ, 17 Րիւ Պլէօ Փարիզ:

**Bar Buffet**

ՈՒՐԱԽ ՋՈՒԱՐԹ ՄԹՆՈԼՈՐՏ

## ԿԱՊ. ԽԱՉԻ ՕՐԸ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Խնջոյք, կազմակերպուած Կապ. Խաչի Վիէնի մասնաճիւղի կողմէ, Համօ Օհանջանեան ակումբին մէջ, այս Կիրակի ժամը 3ին: Կը խօսի Տիկին Վարդանոյշ Հազարեան (Մարսէյլէն):

Մուտքը ազատ է:

## ՀԱՄԲԱՐՁՈՒՄ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը խնջոյք մը կը սարքէ իր դպրոցական աշակերտ – աշակերտուհիներուն համար, Համբարձման տօնին օրը: (Մայիս 11):

Այս առթիւ կը հրաւիրուին ծնողքները եւ բոլոր համակիրները:

## ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Այս Կիրակի հանդիսաւոր պատարագ կը մատուցուի, որու ընթացքին պիտի օծուի Ս. Աստուածածնայ իւղաներկ նոր նկար մը, գործ Պ. Յովհաննէս Թորոսեանի: Բազմաձայն երգեցողութիւնները պիտի ղեկավարէ երաժշտապետ Պ. Ն. Սերգոյեան: Յաւարտ պատարագի մասնաւոր հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի ողբացեալ Տիկին Էլիզ Էսմէրեանի եւ Էսմէրեան ընտանիքին համայն ննջեցելոց յիշատակին:

Կը հրաւիրուի հաւատացեալ ժողովուրդը:

## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Լիոնի Հայ Աւետարանական եկեղեցւոյ նախաձեռնութեամբ եւ քրիստոնեայ զանազան միացեալ ուժերով պիտի ներկայացուի՝

ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ — ՏՐԴԱՏ ԹԱԳԱՒՈՐ

Թատերգութիւնը Լիոնի Զ. Թաղապետարանի սրահը, Մայիս 13ին, ժամը 20.45ին: Նոյն ներկայացումը՝ Վիէնի մէջ Մայիս 14ին, ժամը 15ին, Սերքլ Կաթոլիք սրահը:

## ՀԱՅ ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՀԱՂՈՐԴՈՒԹԵԱՆ ՕՐ

Համբարձման Տօնին առթիւ, յառաջիկայ Մայիս 11ին Հինգշաբթի օր, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ Եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը կազմակերպած է Հայ Մանուկներու Հաղորդութեան օր, Սերովբէ Եպիսկ. Մանուկեանի նախագահութեան տակ:

Փարիզի եւ շրջաններու բոլոր դպրոցներու աշակերտութիւնը կը հրաւիրուի ներկայ գտնուիլ հանդիսաւոր Ս. պատարագին եւ մասնակցիլ Ս. Հաղորդութեան:

Կը հրաւիրուի նաեւ Հայ հաւատացեալ հասարակութիւնը:

## ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԻՒՆԸ ԿԸ ՏՕՆԷ

ԳՐԻԳՈՐ ԶՕՀՐԱՊԻ ԾՆՆԴԵԱՆ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿԸ

Մայիս 8, ժամը 21ին

Ազգ. Տան (32 Րիւ տը Թրէվիզ) Թատերասրահին մէջ

Գեղարուեստական բաժինով

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Ռուբէն Ռս. Միութեան ժողովը Մայս 5ին, Հայ Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ:

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ ժամը 20.30ին, 101 Ավընիւ տը Սաքսի սրճարանի ներքնասրահը: Կարեւոր օրակարգ:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը այս Շաբաթ օր ժամը 21ին, Մշակ. Տան մէջ: Կարեւոր օրակարգ:

### ԳԻՆԵՋՕՆ

Կազմակերպութեամբ Առնուվիլ – Սարսէլի Հ. Յ. Դ. Վարդան Ենթակոմիտէի եւ հովանաւորութեամբ Փարիզի Շրջ. կոմիտէին, մասնակցութեամբ Փարիզի մարմիններու: Այս Շաբաթ իրիկուն, ժամը 20.30ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ, 17 Ռիւ Պլէօ:

Կը հրաւիրուին շրջանի ընկերները:

## ՀԱՅԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԵՐԳԵՐ

ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ

Երգչախումբին կողմէ

ՂԵԿ. Կ. ԱՓՐԻԿԵԱՆԻ

Կիրակի, Մայիս 7, ժամը 15.30ին

**Alfortville, Salle des Fêtes**

Յայտագրին մէջ, Կոմիտասի, Ալթունեանի, Ալէմշահի, Սարեանի եւ այլ հեղինակներու գործերը, որոնցմէ շատեր՝ առաջին անկունդրութիւն:

ՄԵՆԵՐԳՆԵՐ.—

ՆԱՀԱՊԵՏԵԱՆ ՔՈՅՐԵՐ

ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ (թենօր)

ԱՐԱ ՍԵՐՈԲԵԱՆ (պարիթօն)

Հանդէսին կը յաջորդէ, երգչախումբին

ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

ինքնատիպ նուագախումբ

ՄՈՒՏՔ.— Համերգ եւ պարահանդէս՝ 5 Ն. Ֆ.:

Նախապէս ապահովել տեղերը, հեռաձայնելով

TRI. 77-22 Poste 62

Օր. Այտա Զաիրէճեանի

Autobus 103, Charenton-Ecoles, descendre Rue de l'Union - Parking

## ՄԱՐՍԷՅԼ

ՄՈՒՐԱՏ - ՌԱՓԱՅԷԼԵԱՆ ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

ԳԱՐՆԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

13 ՄԱՅԻՍ 1961

ժամը 22էն մինչեւ արշալոյս

**LE CLUB**

51, Rue Grignan, 51

Նուագախումբ

EDDY TOURNEL

Ուրախ ... զուարթ ... ժամեր ...

եւ

(?) ... ՇԱՏ ՄԵԾ ԱՆԱԿՆԿԱԼ ՄԸ ... (?)

Խորհուրդ մը՝ Կանխաւ սեղան ապահովել

Խնդրանք մը՝ Երեկոյթի պատշաճ զգեստ

Տոմսերու համար դիմել.—

ԱՐԱՄ ՇԷԽԻԿԵԱՆ՝ 1, Bd. d'Athènes — Tél. 20.33.80

ՏԻԳՐԱՆ ՀՐԱԶԵԱՆ՝ 11, Rue Filégier — Tél. 62.31.59

ՓԻԼԻՊ. ՓԱՓԱԶԵԱՆ՝ 3a, Rue Lafayette — Tél. 62.42.89

եւ

ՄԻՈՒԹԵԱՆ ՄԻՒՍ ԱՆԴԱՄՆԵՐՈՒՆ

Տէր եւ Տիկին Վահագն Մութաֆեան, Պ. Տիգրան Մութաֆեան, ինչպէս նաեւ Մկրպլեան, Մութաֆեան, Կիւրեղեան, Կիւրճեան, Նեվրուզ եւ Խրիմեան ընտանիքները սրտի անհուն կսկիծով կը ծանուցանեն իրենց զաւկին, եղբօր, եղբօր զաւկին, քրոջ զաւկին եւ ազգականին՝

ՉԱՒԷՆ ՄՈՒԹԱՖԵԱՆԻ

դառնաղէտ մահը որ տեղի ունեցաւ 21 տարեկանին, Ալժերիոյ ճակատը, Մարտ 28ին։

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Երեքշաբթի (Մայիս 9) ժամը 16ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ տարաբախտ երիտասարդին մարմինը պիտի փոխադրուի Անիէռի Հին – Գերեզմանատունը։

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայ իբրեւ այդ նկատել։

**ՅԱՌԱՋ.**— Մեր ցաւակցութիւնները Տէր եւ Տիկին Մութաֆեանի։

## « ՅԱՌԱՋ » ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Տէր եւ Տիկին Սարգիս Թորոսեան իրենց զաւկին Հրայրի ծննդեան տարեդարձին առթիւ, մէկ տարեկան Յառաջ կը նուիրեն։—

## ԳԻՆԵՉՕՆ

Կազմակերպութեամբ Առնուվիլ – Սարսէլի Հ. Յ. Դ. Վարդան ենթակոմիտէի եւ հովանաւորութեամբ Փարիզի Շրջ. կոմիտէին, մասնակցութեամբ Փարիզի մարմիններու։ Այս Շաբաթ իրիկուն, ժամը 20.30ին, Մշակոյթի Տան Ս. Թէհլիրեան սրահին մէջ, 17 Ռիւ Պլէօ։

Կը հրաւիրուին շրջանի ընկերները։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Տիկին Գեղանոյշ Զօլաքեան եւ զաւակները Ժագ եւ Նուպար կը ծանուցանեն թէ այս Կիրակի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Ալֆորվիլի Ս. Պօղոս – Պետրոս եկեղեցին իրենց մօր եւ մեծ մօր՝ Տիկին Խոսրովուհի Ջիլտիրեանի մահուան քառասունքին առթիւ։

Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները։

×

Տէր եւ Տիկին Գէորգ Թորունեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Յովսէփ Շիրինեան եւ զաւակները, Վարդան, Դաւիթ Գրմըզեան (Պոլիս), Տէր եւ Տիկին Միհրան Ղազարեան (Տէսին), Տէր եւ Տիկին Մեսրոպ Ղազարեան եւ զաւակները (Տէսին), Պ. Յակոբ Թորունեան (Ամերիկա), Տիկին Սանդուխթ Թորունեան – Ռաֆայէլեան (Ամերիկա), կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի իրենց հօրեղբօր աղջկան, քրոջ, հօրաքրոջ եւ ազգականին

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՌԵԲԵԿԱ ԳՐՄԸԶԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ, այս Կիրակի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ։ Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները։

## ՊԱՐԱՆՑԻԿ ՅԵՐԵԿՈՅԹ
## Surprise Party

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Իսիի խառնասոր խումբի կողմէ։ Այս Կիրակի ժամը 17էն սկսեալ, ի նըպաստ Հայաստան ամսաթերթին։ Մշակութային Տան մէջ, 17 Րիւ Պլէօ Փարիզ։

**Bar** **Buffet**

ՈՒՐԱԽ ԶՈՒԱՐԹ ՄԹՆՈԼՈՐՏ

### ԿԱՊ. ԽԱՉԻ ՕՐԸ ՎԻԷՆԻ ՄԷՋ

Խնջոյք, կազմակերպուած Կապ. Խաչի Վիէնի մասնաճիւղի կողմէ, Համօ Օհանջանեան ակումբին մէջ, այս Կիրակի ժամը 3ին։ Կը խօսի Տիկին Վարդանոյշ Հազարեան (Մարսէյլէն)։

Մուտքը ազատ է։

### ՀԱՄԲԱՐՁՈՒՄ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը խնջոյք մը կը սարքէ իր դպրոցական աշակերտ – աշակերտուհիներուն համար, Համբարձման տօնին օրը։ (Մայիս 11)։

Այս առթիւ կը հրաւիրուին ծնողքները եւ բոլոր համակիրները։

### ՔԱՌԱՍՈՒՆՔԻ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

**ՄԱՐՍԷՅԼ.**— Այրի Տիկին Հայկուհի Թէրզիպաշեան եւ իր որդիները՝ Քրիստափոր եւ Գէորգ, կը ծանուցանեն Մարսէյլի հայ գաղութին, թէ այս Կիրակի, Պօմոնի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցին մէջ, առաւօտեան ժամերգութեան հետ, պատարագ – հոգեհանգիստ պիտի մատուցուի՝

Ողբացեալ ԱՐԱՄ ԹԷՐԶԻՊԱՇԵԱՆԻ հոգւոյն եւ յիշատակին համար։

(Նախագահ՝ Համազգային Մշակութային Ընկերութեան՝ Մարսէյլի մասնաճիւղին, Փարիզի Մշակութային Տան՝ Մարսէյլի մասնաճիւղին, Հ. Բ. Ը. Միութեան Մարսէյլի մասնաճիւղին, Այնթապի Հայրենակցականին եւն.)։

Ներկայ ազդը կոչ մըն է՝ հանգուցեալին յիշատակը յարգողներուն համար։

### ՇԱՒԻԼԻ ԵԿԵՂԵՑԻ

Այս Կիրակի հանդիսաւոր պատարագ կը մատուցուի, որու ընթացքին պիտի օծուի Ս. Աստուածածնայ իւղաներկ նոր նկար մը, գործ Պ. Յովհաննէս Թորոսեանի։ Բազմաձայն երգեցողութիւնները պիտի ղեկավարէ երաժշտապետ Պ. Ն. Սերգոյեան։ Յաւարտ պատարագի մասնաւոր հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի ողբացեալ Տիկին Էլիզ Էսմէրեանի եւ Էսմէրեան ընտանիքին համայն ննջեցելոց յիշատակին։

Կը հրաւիրուի հաւատացեալ ժողովուրդը։

### ԾԱԽՈՒ Է

Տէսինի մէջ, մեկնումի պատճառով ծախու է խանութ մը, որ ամէն տեսակ առեւտուրի կրնայ յարմարիլ։ Բնակարան, հինգ սենեակ, կառատուն եւ մթերանոց մը։ Յարմար պայմաններ։

Հեռաձայնել.— 495158 (Տէսին – Եղեռի նահանգ։

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

### ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Ապրիլեան եւ Բ. Համաշխարհային պատերազմի հայ նահատակներու համար, Համբարձման տօնին առթիւ Փոնտը Շէրիւի Ազգ. Միութեան կողմէ Ս. Պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի մատուցանէ Տէսինէն Տէր Վարագ քհնյ. Աւագեան, դպրապետութեամբ Պ. Գրիգոր Մարտիրոսեանի։ Այս Հինգշաբթի առաւօտ Ս. Գրիգոր մատրան մէջ։ Հասարակութիւնը կը հրաւիրուի յարգելու նահատակներու յիշատակը։

### ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Առնուվիլի կառավարենց խումբը երկու հարիւր Ն.Ֆ. կը նուիրէ Մշակոյթի Տան։ (Ստանալ «Յառաջ»էն)։

**Հ. Յ. Դ.**

**ՓԱՐԻԶ.**— Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի ժողովը այս Շաբաթ օր ժամը 21ին, Մշակ. Տան մէջ։ Կարեւոր օրակարգ։

## ՆՈՒԷՐՆԵՐ

Պրիւսէլէն Պ. Ամպարեան հարիւր պէլժ. ֆր. կը նուիրէ Հայ Մշակոյթի Տան, հարիւր պէլժ. ֆր. Յառաջի բար֊գաւաճման ։

## ՆՈՒԷՐ

Հրանոյշ եւ Արաքսի Գազազեան երե֊սուն Ն. Ֆ. կը նուիրեն Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղին դպրոցին, Տիկին Ջահրէճեանի մահուան առթիւ ։ (Ստա֊նալ «Յառաջ»էն) ։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր Պարգեւ քհնյ. Մէրճանեան, իր զաւակը եւ բոլոր ազակիր պարագաները, հրապարակաւ իրենց խորին շնորհակա֊լութիւնը կը յայտնեն՝ Գեր. Սրբազան հօր, քահանայից եւ դպրաց դասուց, Ալֆորվիլի Ս. Պօղոս – Պետրոս եկեղեց֊ւոյ հոգաբարձութեան եւ համայն իր սի֊րելի հօտին, Աղքատախնամ Միութեան, հանգստեան տուներու պաշտօնէութեանց եւ պատսպարեալներուն, Մխիթար. հայ֊րերուն եւ Ս. Մուրատեան վարժարանի աշակերտութեան, Դպրոցասէր վարժա֊րանի պաշտօնէութեան, նախկին աշա֊կերտուհիներուն եւ ընկերուհիներուն, Ալֆորվիլի Ս. Մինասեան ենթակոմիտէ֊ին, միութիւններուն եւ կազմակերպու֊թիւններուն եւ անխտիր բոլոր բարեկամ֊ներուն եւ ծանօթներուն որոնք՝ ծաղկե֊պսակներով, հեռագրով, նամակով եւ անձամբ փութացած էին իրենց անկեղծ ցաւակցութիւնը յայտնել ողբացեալ Երեց. Վեհանոյշ Մէրճանեանի դառնա֊կսկիծ եւ վաղահաս մահուան առթիւ ։

Մասնաւոր շնորհակալիք ղրկուած չըլ֊լալով ոչ ոքի, կը խնդրուի ներկայս իբր այդ ընդունիլ ։

## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Լիոնի Հայ Աւետարանական եկեղեցւոյ նախաձեռնութեամբ եւ քրիստոնեայ զա֊նազան միացեալ ուժերով պիտի ներկա֊յացուի՝

ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ —
ՏՐԴԱՏ ԹԱԳԱՒՈՐ

Թատերգութիւնը Լիոնի Զ. Թաղապետա֊րանի սրահը, Մայիս 13ին, ժամը 20.45֊ին ։ Նոյն ներկայացումը՝ Վիէնի մէջ Մայիս 14ին, ժամը 15ին, Սերքլ Կաթոլիք սրահը ։

## ԾԱԽՈՒ Է

Ժամագործութեան խանութ մը, վա֊ճառաշահ թաղի մէջ՝ ՓԱՐԻԶ (18) ։ Ունի փոքր խոհանոց մը, ջուր եւ կազ ։

Պայմաններուն համար հեռախօսել՝ ժամը 9էն 19, բացի Շաբաթ օրէն

LAB. 89-29

---

Տէր եւ Տիկին Վահագն Մութաֆեան, Պ. Տիգրան Մութաֆեան, ինչպէս նաեւ Մկրպլեան, Մութաֆեան, Կիւրեղեան, Կիւրճեան, Նեվրուզ եւ Խրիմեան ընտա֊նիքները սրտի անհուն կսկիծով կը ծա֊նուցանեն իրենց զաւկին, եղբօր, եղբօր զաւկին, քրոջ զաւկին եւ ազգականին՝

ԶԱՒԷՆ ՄՈՒԹԱՖԵԱՆԻ

դառնաղէտ մահը որ տեղի ունեցաւ 21 տարեկանին, Ալժերիոյ ճակատը, Մարտ 28ին ։

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Երեքշաբթի (Մայիս 9) ժամը 16ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ուրկէ տարաբախտ երիտասարդին մարմինը պիտի փոխադրուի Անիէռի Հին – Գերեզմանատունը ։

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել ։

### ՀԱՄԲԱՐՁՈՒՄ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը խն֊ջոյք մը կը սարքէ իր դպրոցական աշակերտ – աշակերտուհիներուն համար, Համբարձման տօնին օրը ։ (Մայիս 11) ։

Այս առթիւ կը հրաւիրուին ծնողքները եւ բոլոր համակիրները ։

### ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Ապրիլեան եւ Բ. համաշխարհային պատերազմի հայ նահատակներու հա֊մար, Համբարձման տօնին առթիւ Փոն տը Շէրիւի Ազգ. Միութեան կողմէ Ս. Պատարագ եւ հոգեհանգստեան պաշտօն պիտի մատուցանէ Տէսինէն Տէր Վարագ քհնյ. Աւագեան, դպրապետութեամբ Պ. Գրիգոր Մարտիրոսեանի ։ Այս Հինգ֊շաբթի առաւօտ Ս. Գրիգոր մատրան մէջ ։ Հասարակութիւնը կը հրաւիրուի յարգելու նահատակներու յիշատակը ։

### ՀԱՅ ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՀԱՂՈՐԴՈՒԹԵԱՆ ՕՐ

Համբարձման Տօնին առթիւ, յառաջի֊կայ Մայիս 11ին Հինգշաբթի օր, Փարի֊զի Ս. Յովհ. Մկրտիչ Եկեղեցւոյ Հոգա֊բարձութիւնը կազմակերպած է Հայ Մա֊նուկներու Հաղորդութեան օր, Սերովբէ Եպիսկ. Մանուկեանի նախագահութեան տակ ։

Փարիզի եւ շրջաններու բոլոր դպրոց֊ներու աշակերտութիւնը կը հրաւիրուի ներկայ գտնուիլ հանդիսաւոր Ս. պատա֊րագին եւ մասնակցիլ Ս. Հաղորդութեան ։

Կը հրաւիրուի նաեւ Հայ հաւատացեալ հասարակութիւնը ։

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս Ուրբաթ իրիկուն, ժամը 20.30ին, Մշա֊կոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ, Մէթրօ Քատէ ։

Դասախօս՝ ՀՐԱՆՏ – ՍԱՄՈՒԷԼ

Նիւթը՝ Մերձաւոր Արեւելքի հայ գա֊ղութի մասին ։

Մուտքը ազատ է ։

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ ։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

—o—

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ Պուլ. Օտոոյի մաս֊ճիւղի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերուհիները այս Ե֊րեքշաբթի ժամը 15ին ։ Ծանօթ հասցէ֊տեղին ։ Խիստ կարեւոր օրակարգ ։ Կը խնդրուի բոլոր ընկերուհիները ներկայ ըլլան ։

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի թատերական «ՊԱՐՈՆԵԱՆ» խումբը մեծ պատրաս֊տութեամբ կը ներկայացնէ՝

ՅԱԿՈԲ ՊԱՐՈՆԵԱՆԻ

# ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐԸ

Զաւեշտ երեք արար, 5 պատկեր

Շաբաթ, Մայիս 13, ժամը ճիշդ 20.45ին, Սալ Ֆօլ – Ֆարալիք, 21 Րիւ Ֆ֊Թուտիք ։ Մէթրօ Ռէփիւպլիք ։

Ղեկավարութեամբ եւ մասնակցութեամբ Ա. Գրիգորեանի ։ Իրենց մասնակցու֊թիւնը կը բերեն Մառի Սօֆեան, Ա. Մառանկօզեան, Գ. Գեւոնեան, Պ. Թէրզեան, Ադամեան, Ս. Յակոբեան, Ս. Պետոյեան, Ս. Շէրպէթճեան, Պ. Պառաւեան, Մատիրեան եւ Քէհեայեան ։

Տոմսերը՝ 3 եւ 4, 5 Ն. Ֆ. ։

Դիմել Մշակոյթի Տուն՝ 17 Րիւ Պլէօ, գրատուն Հ. Սամուէլ՝ 51 Րիւ Մէօսիէ լը Փրէնս ։ Հայոց Եկեղեցին, 15 Րիւ Ժան Կուժօն եւ Նոր Սերունդի անդամ֊ներուն ։



## ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՅԱՂԹԱԿԱՆ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻ

46ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Կազմակերպութեամբ Վասպուրականի Հայր. Միութեան Ֆրանսայի Կեդր. վարչութեան ։

Կիրակի 14 Մայիս, Սալ Մազընօ, 88 Րիւ տօպանեը, ՄԱՐՍԷՅԼ

Հովանաւորութեամբ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

Հանդէսին կը նախագահէ Միութեան ատենապետ Պ. ՎԱՐԴԱՆ ՊԱՆՏԻԿԵԱՆ

Տարեդարձի հանդէսին հրաւիրուած են Ազգային Կեդր. վարչութիւնը, կուսակ֊ցութեանց, կրօնական, Յարանուանութեանց, Բարեգործականի, Մարզա֊կան եւ Հայրենակցական Միութիւններու ներկայացուցիչները ։

Խօսք կը տրուի կուսակցութեանց ներկայացուցիչներուն ։

Կը բանախօսէ Ամերիկայի Վասպուրականի Համա – Հայրենակցական Միու֊թեան «Վարագ» պարբերաթերթի խմբագիր (Ամերիկայէն)

Պ. ԱՐՍԷՆ ԹԷՐԼԷՄԷԶԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին ծանօթ ու գեղարուեստասէր հայրենակիցներու կողմէ ։ Կը ներկայացուի՝ «ՄՈՑԼ ԱՄՈՒՍԻՆ» զաւեշտը,

Ղեկավարութեամբ քէմանչիստ Համոյի ։

Պարահանդէս ժամը 20էն մինչեւ կէս գիշեր, հանրածանօթ ՍԷՐԺ – ՔՕՐՕ նուագախումբով ։ Ճոխ պիւֆէ մատչելի գիներով ։

Տիկին Գարզուհի Սերճանեան, Տէր եւ Տիկին Աշոտ Սերճանեան եւ զաւակները, Տէր եւ Տիկին Հայկազուն Պետրոսեան, Տէր եւ Տիկին Խաչիկ Արապեան, Տէր եւ Տիկին Մինաս Շահրիկեան եւ զաւակնե – րը, Տէր եւ Տիկին Մասիս Այնաճեան եւ զաւակները (Երեւան), Տիկին Անգինէ Սերճանեան եւ զաւակները (Պոլիս), Տի-կին Մանուշակ Խոչեան եւ զաւակները, Տէր եւ Տիկ. Վահան Խոչեան եւ զաւակ-ները, Պ. Ալեքսան Նուրեան եւ զաւակ – ները, Տէր եւ Տիկին Վարդան Շալճեան եւ զաւակը (Պաքու), Այրի Տիկին Ատրի-նէ Պարոնվարդեան, Տէր եւ Տիկին Կի-րակոս Կարապետեան եւ զաւակները, Այ-րի Տիկին Զապէլ Խոչեան եւ զաւակները, եւ ազգական ընտանիքները, սրտի անհուն կսկիծով կը ծանուցանեն իրենց ամուս – նոյն, հօր, մեծ հօր, աներհօր եւ ազգա-կանին՝

**ԲԱՐՍԵՂ ՍԵՐՃԱՆԵԱՆԻ**

մահը, որ տեղի ունեցաւ 77 տարեկանին:

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Չորեքշաբթի (Մայիս 10) ժամը 14·30ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ ե – կեղեցին, ուրկէ մարմինը պիտի ամփոփ-ուի Փեռ Լաշէզի ընտանեկան դամբանին մէջ:

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայ իբրեւ այդ նկատել:

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը այս Ուրբաթ իրիկուն, ժամը 20·30ին, Մշա-կոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ, Մէթրօ Քատէ:

Դասախօս՝ ՀՐԱՆՏ – ՍԱՄՈՒԷԼ

Նիւթը՝ Մերձաւոր Արեւելքի հայ գա – ղութի մասին:

Մուտքը ազատ է:

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

## ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Լիոնի Հայ Աւետարանական եկեղեցւոյ նախաձեռնութեամբ եւ քրիստոնեայ զա – նազան միացեալ ուժերով պիտի ներկա – յացուի՝

ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ — ՏՐԴԱՏ ԹԱԳԱՒՈՐ

Թատերգութիւնը Լիոնի Զ. Թաղապետա – րանի սրահը, Մայիս 13ին, ժամը 20·45-ին: Նոյն ներկայացումը՝ Վիէնի մէջ Մայիս 14ին, ժամը 15ին, Սերքլ Կաթոլիք սրահը:

## ՀԱՄԲԱՐՁՈՒՄ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը խն-ջոյք մը կը սարքէ իր դպրոցական աշակերտ – աշակերտուհիներուն համար, Համբարձման տօնին օրը: (Մայիս 11): Կէսօրէ վերջ ժամը 3·30ին, Մշակոյթի Տան մէջ, 17, Րիւ Պլէօ:

Այս առթիւ կը հրաւիրուին ծնողքները եւ բոլոր համակիրները:

## ՀԱՅ ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՀԱՂՈՐԴՈՒԹԵԱՆ ՕՐ

Համբարձման Տօնին առթիւ, յառաջի – կայ Մայիս 11ին Հինգշաբթի օր, Փարի-զի Ս. Յովհ. Մկրտիչ Եկեղեցւոյ Հոգա – բարձութիւնը կազմակերպած է Հայ Մա-նուկներու Հաղորդութեան օր, Սերովբէ Եպիսկ. Մանուկեանի նախագահութեան տակ:

Փարիզի եւ շրջաններու բոլոր դպրոց-ներու աշակերտութիւնը կը հրաւիրուի ներկայ գտնուիլ հանդիսաւոր Ս. պատա-րագին եւ մասնակցիլ Ս. Հաղորդութեան:

Կը հրաւիրուի նաեւ Հայ հաւատացեալ հասարակութիւնը:

## ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Երիտասարդուհիներու Զաւօ Շանթ խումբին դասախօսութիւնը այս Ուրբաթ ժամը 20ին, Կապոյտ Խաչի գրասենեակը, 17, Րիւ Պլէօ:

Դասախօս՝ ՏԻԿ. ՀՈՒՐԻ ԻՓԷԿՃԵԱՆ-ՊՈՒՏԱՔԵԱՆ:

Կը հրաւիրուին նաեւ անդամուհիներ եւ համակիրներ:

## ՄՈՆՄՈՐԱՆՍԻԻ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՏՈՒՆ

Հինգշաբթի՝ ժամը 16·30ին, Համ-բարձման տօնի առթիւ ձայնաւոր պատա-րագ Ս. Խաչ ժողովրդապետութեան կող-մէ:

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

Հ. Յ. Դ. Նոր Սեբաստիոյ թատերական «ՊԱՐՈՆԵԱՆ» խումբը մեծ պատրաս-տութեամբ կը ներկայացնէ՝

ՅԱԿՈԲ ՊԱՐՈՆԵԱՆԻ

# ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐԸ

Զաւեշտ երեք արար, 5 պատկեր

Շաբաթ, Մայիս 13, ժամը ճիշդ 20·45ին, Սալ Փօլ – Ֆարալիէ, 21 Րիւ Իվ-Թուտիէ: Մէթրօ Ռէփիւպլիք:

Ղեկավարութեամբ եւ մասնակցութեամբ Ա. Գրիգորեանի: Իրենց մասնակցու-թիւնը կը բերեն Մառի Սօֆեան, Ա. Մառանկօզեան, Գ. Գեւոնեան, Պ. Թէրզեան, Ադամեան, Ս. Յակոբեան, Ս. Պետոյեան, Ս. Շէրպէթճեան, Պ. Պառաւեան, Մատիրեան եւ Քէհեայեան:

Տոմսերը՝ 3 եւ 4, 5 Ն. Ֆ.:

Դիմել Մշակոյթի Տուն՝ 17 Րիւ Պլէօ, գրատուն Հ. Սամուէլ՝ 51 Րիւ Մէօսիէօ լը Փրէնս: Հայոց Եկեղեցին, 15 Րիւ Ժան Կուժօն եւ Նոր Սեբաստիոյ անդամ-ներուն:

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. «Ս. Մինաս-եան» ենթակոմիտէին ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին: Ներկայ կ՚ըլլայ Շրջ. Կոմի-տէի ներկայացուցիչը: Կը խնդրուի ճըշ-դապահ ըլլալ: Կարեւոր օրակարգ:

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայր-եան ենթակոմիտէին ընդհ. ժողովի կը հրաւիրէ Լանսէի, Րընայի եւ Կրընոպլի բոլոր ընկերները՝ այս Շաբաթ, ժամը ճիշդ 21ին, դպրոցի սրահին մէջ: Կարեւոր օրակարգ:

ՊԷԼՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ռոստոմ խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, ընկ. Մանուկի բնակարանը, 40 Րիւ տը լա Մար:

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. «Արղութեան» խումբի ժողովը այս Շաբաթ երեկոյ ժա-մը 9ին, սովորական հաւաքատեղին:

ՓԱՐԻԶԻ Հայ Աւետ. եկեղեցւոյ տի – կինները կը հրաւիրեն ձեզ իրենց անու – շեղէնի տօնին, որ տեղի պիտի ունենայ Համբարձման օրը, այս Հինգշաբթի կէսօրէ յետոյ ժամը 3ին, 8պիս, Րիւ տէ Թէրն, Փարիզ (17): Մէթրօ Փորթ Մայ-եօ:



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)



ՄԱՐՍԷՅԼ

ՄՈՒՐԱՏ - ՌԱՓԱՅԷԼԵԱՆ

ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

# ԳԱՐՆԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

13 ՄԱՅԻՍ 1961

ժամը 22էն մինչեւ արշալոյս

**LE CLUB**

51, Rue Grignan, 51

Նուագախումբ

EDDY TOURNEL

Ուրախ ... զուարթ ... ժամեր ...

եւ

(?) ... ՇԱՏ ՄԵԾ ԱՆԱԿՆԿԱԼ ՄԸ ... (?)

Խորհուրդ մը՝ կանխաւ սեղան ապահովել

Խնդրանք մը՝ Երեկոյթի պատշաճ զգեստ

Տոմսերուն համար դիմել.—

| | |
|---|---|
| ԱՐԱՄ ՇԷԽԻԿԵԱՆ՝ | 1, Bd. d'Athènes — Tél. 20.33.80 |
| ՏԻԳՐԱՆ ՀՐԱԶԵԱՆ՝ | 11, Rue Filégier — Tél. 62.31.59 |
| ՓԻԼԻՊ. ՓԱՓԱԶԵԱՆ՝ | 3a, Rue Lafayette — Tél. 62.42.89 |

եւ

ՄԻՈՒԹԵԱՆ ՄԻՒՍ ԱՆԴԱՄՆԵՐՈՒՆ

## ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՅԱՂԹԱԿԱՆ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻ

### 46ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Կազմակերպութեամբ Վասպուրականի Հայր. Միութեան Ֆրանսայի Կեդր. վարչութեան:

Կիրակի 14 Մայիս, Սալ Մազընօ, 88 Րիւ տօպանեը, ՄԱՐՍԷՅԼ

Հովանաւորութեամբ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

Հանդէսին կը նախագահէ Միութեան ատենապետ Պ. ՎԱՐԴԱՆ ՊԱՆՏԻԿԵԱՆ

Տարեդարձի հանդէսին հրաւիրուած են Ազգային Կեդր. վարչութիւնը, կուսակ-ցութեանց, կրօնական, Ցարանուանութեանց, Բարեգործականի, Մարզա – կան եւ Հայրենակցական Միութիւններու ներկայացուցիչները:

Խօսք կը տրուի կուսակցութեանց ներկայացուցիչներուն:

Կը բանախօսէ Ամերիկայի Վասպուրականի Համա – Հայրենակցական Միու – թեան «Վարագ» պարբերաթերթի խմբագիր (Ամերիկայէն)

Պ. ԱՐՍԷՆ ԹԷՐԼԷՄԷԶԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին ծանօթ ու գեղարուեստասէր հայրենակիցներու կողմէ: Կը ներկայացուի՝ «ՇՈՅԼ ԱՄՈՒՍԻՆ» զաւեշտը,

Ղեկավարութեամբ քէմանչիստ Համոյի:

Պարահանդէս ժամը 20էն մինչեւ կէս գիշեր, հանրածանօթ ՍԷՐԺ – ՔՕՐՕ նուագախումբով: Ցօխ պիւֆէ մատչելի գիներով:

## Հ. Յ. Դ.

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. «Ս. Մինասեան» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Ուրբաթ, ժամը 21ին: Ներկայ կ՚ըլլայ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչը: Կը խնդրուի ճըշդապահ ըլլալ : Կարեւոր օրակարգ :

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Լանսէի, Րընայի եւ Կրընոպլի բոլոր ընկերները՝ այս Շաբաթ , ժամը ճիշդ 21ին, դպրոցի սրահին մէջ: Կարեւոր օրակարգ :

ՊԷԼՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ռոստոմ խումբի ժողովը այս Շաբաթ , ժամը 21ին, ընկ. Մանուկի բնակարանը, 40 Րիւ տը լա Մար :

ՇԱԻԻԼ.— Հ. Յ. Դ. «Արղութեան» խումբի ժողովը այս Շաբաթ երեկոյ ժամը 9ին, սովորական հաւաքատեղին :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Գարակէօզեան եւ Նիկողոսեան ընտանիքները շնորհակալութիւն կը յայտնեն Գերաշնորհ Տէր Սերովբէ Եպիսկ. Մանուկեանի, Փարիզի եկեղեցւոյ ներկայացուցչական ժողովի, վարչութեան եւ Հոգաբարձութեան ատենապետներուն եւ անոնց անդամներուն, քահանայից եւ դպրաց դասուն, պաշտօնէութեան, երգչախումբի անդամներուն, Փարիզահայ մամուլին, գաւառի եկեղեցական վարչութիւններու, Փարիզի բարենպատակ միութիւններու, Պանեէօ Քաչանի հայ եւ ֆրանսացի ընտանիքներու, ինչպէս նաեւ բոլոր բարեկամներու, ծանօթներու, ազգականներու եւ ամէն անոնց՝ որոնք անձամբ, հեռագիրով, հեռախօսով, նամակով եւ ծաղկեպսակներով մասնակցեցան իրենց մեծ վշտին,

ՄԱՐԻ ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆԻ

կսկծալի մահուան առթիւ:

## ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԻՒՆԸ

կը կազմակերպէ ճաշ մը, ի պատիւ Պ. ՀՐԱՉ ԶԱՐԴԱՐԵԱՆԻ, Շաբաթ 13 Մայիս, ժամը 20ին, 2 Րիւ Լամարթին, (մէթրօ Քատէ):

Գին 8·50 Ն. Ֆ. :

Մասնակցիլ փափաքողները թող բարեհաճին արձանագրուիլ Պ. Որբունիի մօտ: Tél. TRU. 71-98

## Կ'ՈՒԶՈՒԻ

Միջին տարիքի կին մը, տան մէջ երախայ մը խնամելու ամբողջ օրը եւ երեկոյեան ծնողքին ճաշը պատրաստելու համար: Տան մէջ բնակելու կարելիութիւն եւ լաւ վճարում :

Դիմել՝ ԱՐԵՒԵԱՆ, 13 Րիւ Ժ. Փուլմարէ, Լէ Լիլա, Tél. VIL, 36-47

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՏԱՐԵԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ
## ՎԵՆԵՏԻԿ—Ս. ՂԱԶԱՐ—ՀՌՈՄ
## ԵՒ
## ՇՐՋԱԿԱՅՔԸ

Շաբաթ մը ծովի կեանք՝ Հանր. Սան Մարինոյի մօտ, Ադրիականի աննման աւազին վրայ, ծովեզերեայ նորաշէն եւ հանգստաւէտ պանդոկի մը մէջ :

ՄԵԿՆՈՒՄ՝ Օգոստոս, 6
ՎԵՐԱԴԱՐՁ՝ Օգոստոս, 31

Արձանագրութեանց եւ մանրամասնութեանց համար դիմել .—

Ն. ՄԱՅԻՍԵԱՆ
45, Rue de Trévise, PARIS (9e)
Tél. : TAI. 49-40
(Գաւիթին մէջ)

Յ. ՊԱՍՄԱՃԵԱՆ
11, Avenue Béranger
ARNOUVILLE-LES-GONESSE (S. et O)

## ՃԱՄԲՈՐԴՈՒԹԻՒՆ
ԴԷՊԻ
## ԵՐԵՒԱՆ

երեք շաբաթը անգամ մը
ՆԱՒՈՎ

ՄԱՐՍԷՅԼԷՆ ուղղակի դէպի ԵՐԵՒԱՆ
Երթուդարձի գիներն են, կերակուրով լերադարձին կարելի է Վենետիկ իջնել

13 ՕՐ ԵՐԵՒԱՆ

Պանդոկի մէջ բնակութեամբ եւ սնունդով

| | |
|---|---|
| Բ. կարգ | 3046 Ն. Ֆ. |
| Գ. կարգ | 2506 Ն. Ֆ. |

ԶԵՂՉ խմբովին ճամբորդողներուն :

ՈՒՂԵԳՈՅՔԻ իրաւունք, անձ գլուխ, 150 քիլօ՝ Բ. կարգի եւ 100 քիլօ՝ Գ. կարգի ճամբորդներուն :

Նոյն ճամբորդութիւնը օդանաւով կամ երկաթուղիով :

Մեր գրասենեակը կը զբաղի նաեւ դէպի Ամերիկա, Սուրիա եւ այլ ճամբորդութիւններով :

ԴԻՄԵԼ՝

ԺԱՆ-ԵՂԻՇԷ ԱՐԶՈՒՄԱՆԵԱՆ

ՄԱՐՍԷՅԼ
48, Rue de la République
Tél.: 20.47.22
MARSEILLE

●

ՓԱՐԻԶ
Մասնաճիւղ
7, Rue Auber, 7
Tél : RIC. 63-69
PARIS (9e)

## ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Երիտասարդուհիներու Ջաւօ Շանթ խումբին դասախօսութիւնը այս Ուրբաթ ժամը 20ին, Կապոյտ Խաչի գրասենեակը, 17, Րիւ Պլէօ:

Դասախօս՝ ՏԻԿ. ՀՈՒՐԻ ԻՓԷԿԵԱՆ – ՊՈՒՏԱՔԵԱՆ :

Կը հրաւիրուին նաեւ անդամուհիներ եւ համակիրներ :

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ ԼՍԱՐԱՆ

Հերթական դասախօսութիւնը Ուրբաթ իրիկուն, ժամը 20·30ին, Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ, Մէթրօ Քատէ :

Դասախօս՝ ՀՐԱՆՏ – ՍԱՄՈՒԷԼ

Նիւթը՝ Մերձաւոր Արեւելքի հայ գաղութի մասին :

Մուտքը ազատ է :

Կը խնդրուի ճշդապահ ըլլալ :

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի թատերական « ՊԱՐՈՆԵԱՆ » խումբը մեծ պատրաստութեամբ կը ներկայացնէ՝

ՅԱԿՈԲ ՊԱՐՈՆԵԱՆԻ

# ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐԸ

Զաւեշտ երեք արար, 5 պատկեր

Շաբաթ, Մայիս 13, ժամը ճիշդ 20·45ին, Սալ Փօլ – Ֆարալիք, 21 Րիւ Իվ. Թուտիք: Մէթրօ Ռէփիւպլիք :

Ղեկավարութեամբ եւ մասնակցութեամբ Ա. Գրիգորեանի: Իրենց մասնակցութիւնը կը բերեն Մարի Սօֆեան, Ա. Մառանկօզեան, Գ. Գեւոնեան, Պ. Թէրզեան, Ադամեան, Ս. Յակոբեան, Ս. Պետոյեան, Ս. Շէրպէթճեան, Պ. Պառաւեան Մատիրեան եւ Քէհեայեան :

Տոմսերը՝ 3 եւ 4, 5 Ն. Ֆ.:

Դիմել Մշակոյթի Տուն՝ 17 Րիւ Պլէօ, գրատուն Հ. Սամուէլ՝ 51 Րիւ Մէօսիէօ լը Փրէնս: Հայոց Եկեղեցին, 15 Րիւ Ժանկուժօն եւ Նոր Սերունդի անդամներուն :

ՄԱՐՍԷՅԼ

ՄՈՒՐԱՏ-ՌԱՓԱՅԷԼԵԱՆ
ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

# ԳԱՐՆԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

13 ՄԱՅԻՍ 1961
ժամը 22էն մինչեւ արշալոյս

**LE CLUB**

51, Rue Grignan, 51

Նուագախումբ

EDDY TOURNEL

Ուրախ ... զուարթ ... ժամեր ...

եւ

(?) ... ՇԱՏ ՄԵԾ ԱՆԱԿՆԿԱԼ ՄԸ ... (?)

Խորհուրդ մը՝ կանխաւ սեղան ապահովել

Խնդրանք մը՝ Երեկոյթի պատշաճ զգեստ

Տոմսերուն համար դիմել.—

ԱՐԱՄ ՇԷԽԻԿԵԱՆ՝ 1, Bd. d'Athènes — Tél. 20.33.80
ՏԻԳՐԱՆ ՀՐԱՉԵԱՆ՝ 11, Rue Filégier — Tél. 62.31.59
ՓԻԼԻՊ. ՓԱՓԱԶԵԱՆ՝ 3a, Rue Lafayette — Tél. 62.42.89

եւ

ՄԻՈՒԹԵԱՆ ՄԻԽՍ ԱՆԴԱՄՆԵՐՈՒՆ

## ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՅԱՂԹԱԿԱՆ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻ
46ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Կազմակերպութեամբ Վասպուրականի Հայր. Միութեան Ֆրանսայի Կեդր. վարչութեան :

Կիրակի 14 Մայիս, Սալ Մազընօ, 88 Րիւ տօպաներ, ՄԱՐՍԷՅԼ

Հովանաւորութեամբ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

Հանդէսին կը նախագահէ Միութեան ատենապետ Պ. ՎԱՐԴԱՆ ՊԱՆՏԻԿԵԱՆ

Տարեդարձի հանդէսին հրաւիրուած են Ազգային Կեդր. վարչութիւնը, կուսակցութեանց, կրօնական, Ցարանուանութեանց, Բարեգործականի, Մարզական եւ Հայրենակցական Միութիւններու ներկայացուցիչները :

Խօսք կը տրուի կուսակցութեանց ներկայացուցիչներուն :

Կը բանախօսէ Ամերիկայի Վասպուրականի Համա – Հայրենակցական Միութեան «Վարագ» պարբերաթերթի խմբագիր (Ամերիկայէն)

Պ. ԱՐՍԷՆ ԹԷՐԼԷՄԷԶԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին ծանօթ ու գեղարուեստասէր հայրենակիցներու կողմէ : Կը ներկայացուի՝ « ՏՕՅԼ ԱՄՈՒՍԻՆ» զաւեշտը,

Ղեկավարութեամբ քէմանչիստ Համոյի :

Պարահանդէս ժամը 20էն մինչեւ կէս գիշեր, հանրածանօթ ՍԷՐԺ – ՔՕՐՕ նուագախումբով : Ճոխ պիւֆէ մատչելի գիներով :



**KINOPANORAMA**
60, AVENUE DE LA MOTTE-PIQUET
Parking illimité Tél. : FON. 50-50

# UN FRANÇAIS A MOSCOU

ՎԵՐՋԻՆ ՇԱԲԱԹՆԵՐ

ԿՐԵՄԼԻՆԻ ԱՆԾԱՆՕԹ ԳԱՆՁԵՐԸ
ԱՐԱՐԱՏԸ
ԵՐԵՒԱՆ
ՀԱՅԿԱԿԱՆ ՊԱՐԵՐ (Զանգեզուր, ժիւռորները, ծաղկեփունջ, կովիւները)



Շաբաթ, կիրակի եւ տօնական օրերը՝ երկու ցերեկոյթ 14·30 եւ 16·50, Շաբթու մէջ 15·30

ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ՕՐԸ, Մայիս 11 երկու ցերեկոյթ :

Շաբթու մէջ 2 երեկոյթ 19·15 եւ 21·35

Տոմսերը կարելի է առնել 13 օր առաջ ժամը 11էն 19 եւ Աժանեներէն

Գին՝ 4·45 եւ 7·50 Ն. Ֆ.

# Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Րաֆֆի» խումբի ժողովը այս Հինգշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ։ Դասախօս՝ Ընկեր ՀՐԱՆՏ–ՍԱՄՈՒԷԼ։ Նիւթ՝ Լիբանանի Հայ Գաղութը։ Կը հրաւիրուին խումբերու ընկեր – ընկերուհիները։

ԿՐԸՆՈՊԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Լանսէի, Րընայի եւ Կրընոպլի բոլոր ընկերները՝ այս Շաբաթ, ժամը ճիշդ 21ին, դպրոցի սրահին մէջ։ Կարեւոր օրակարգ։

ՊԷԼՎԻԼ.— Հ. Յ. Դ. Ռոստոմ խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, ընկ. Մանուկի բնակարանը, 40 Րիւ տը լա Մար։

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. «Արդութեան» խումբի ժողովը այս Շաբաթ երեկոյ ժամը 9ին, սովորական հաւաքատեղին։

Հ. Յ. Դ. ԼԻՈՆԻ շրջանի բոլոր ընկերները ընդհ. ժողովի կը հրաւիրուին այսօր Շաբաթ, ժամը 20·30ին, սովորական հաւաքատեղին։

## ԼԸ ՖՈՅԻ ԲԱՆԱԿՈՒՄՆԵՐԸ

«Ժէօնէս է Աքսիոն» Հայկ. Ընկերութեան կազմակերպած բանակումներուն արձանագրութիւնները սկսած են։ Առաջին շրջան՝ Յուլիս ամիս, 7 – 15 տարեկաններու համար, երկսեռ, երկրորդ շրջան՝ Օգոստոս 1–12, 14էն վեր եղողներուն համար, երկսեռ։ Բանակումները տեղի կ'ունենան Լը Ֆոյի դղեակին մէջ (Իզեռ)։

Արձանագրութեան համար դիմել, ՎԵՐ. Յ. ՀԷԼՎԱՃԵԱՆ,

6, Place de la Rotonde
St. Jérôme . MARSEILLE, 13
Tél. : 62-85-10

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանի յաջորդ հաւաքոյթը տեղի կ'ունենայ այս Երկուշաբթի ժամը 21ին, Քատէի վերնայարկը։

Պիտի խօսի նկարիչ Պ. ԺԻՐԱՅՐ ՓԱԼԱՄՈՒՏԵԱՆ։

Նիւթ՝ «Ինչ է Ազգը»։



ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԻՒՆԸ կը կազմակերպէ ճաշ մը, ի պատիւ Պ. ՀՐԱՉ ԶԱՐԴԱՐԵԱՆի, Շաբաթ 13 Մայիս, ժամը 20ին, 2 Րիւ Լամարթին, (մէթրօ Քատէ)։

Գին 8·50 Ն. Ֆ.։

Մասնակցիլ փափաքողները թող բարեհաճին արձանագրուիլ Պ. Որբունիի մօտ։ Tél. TRU. 71-98



## ԹԱՏԵՐԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

Հ. Յ. Դ. Նոր Սերունդի թատերական «ՊԱՐՈՆԵԱՆ» խումբը մեծ պատրաստութեամբ կը ներկայացնէ՝

ՅԱԿՈԲ ՊԱՐՈՆԵԱՆԻ

# ՄԵԾԱՊԱՏԻՒ ՄՈՒՐԱՑԿԱՆՆԵՐԸ

Զաւեշտ երեք արար, 5 պատկեր

Շաբաթ, Մայիս 13, ժամը ճիշդ 20·45ին, Սալ Փօլ – Ֆարալիք, 21 Րիւ Ժ-
Թուտիք։ Մէթրօ Ռէփիւպլիք։

Ղեկավարութեամբ եւ մասնակցութեամբ Ա. Գրիգորեանի։ Իրենց մասնակցութիւնը կը բերեն Մարի Սօֆեան, Ա. Մառանկոզեան, Գ. Գեւոնեան, Պ. Թէրզեան, Ադամեան, Ս. Յակոբեան, Ս. Պետոյեան, Ս. Շէրպէթճեան, Պ. Պառաւեան, Մատիրեան եւ Քէհեայեան։

Տոմսերը՝ 3 եւ 4, 5 Ն. Ֆ.։

Դիմել Մշակոյթի Տուն՝ 17 Րիւ Պլէօ, գրատուն Հ. Սամուէլ՝ 51 Րիւ Մէօսիէ լը Փրէնս։ Հայոց Եկեղեցին, 15 Րիւ Ժանկուժօն եւ Նոր Սերունդի անդամներուն։

ՄԱՐՍԷՅԼ

ՄՈՒՐԱՏ - ՌԱՓԱՅԷԼԵԱՆ
ՆԱԽԿԻՆ ԱՇԱԿԵՐՏԱՑ ՄԻՈՒԹԻՒՆ

# ԳԱՐՆԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

13 ՄԱՅԻՍ 1961

ժամը 22էն մինչեւ արշալոյս

LE CLUB

51, Rue Grignan, 51

Նուագախումբ

EDDY TOURNEL

Ուրախ ... զուարթ ... ժամեր ...

եւ

(?) ... ՇԱՏ ՄԵԾ ԱՆԱԿՆԿԱԼ ՄԸ ... (?)

Խորհուրդ մը՝ կանխաւ սեղան ապահովել | Խնդրանք մը՝ Երեկոյթի պատշաճ զգեստ

Տոմսերուն համար դիմել.—

ԱՐՏԱՄ ՇԷԽԻԿԵԱՆ՝ 1, Bd. d'Athènes — Tél. 20.33.80
ՏԻԳՐԱՆ ՀՐԱՉԵԱՆ՝ 11, Rue Filégier — Tél. 62.31.59
ՓԻԼԻՊ. ՓԱՓԱԶԵԱՆ՝ 3a, Rue Lafayette — Tél. 62.42.89

եւ

ՄԻՈՒԹԵԱՆ ՄԻՒՍ ԱՆԴԱՄՆԵՐՈՒՆ

## ՎԱՍՊՈՒՐԱԿԱՆԻ ՑԱՂԹԱԿԱՆ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻ

46ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

Կազմակերպութեամբ Վասպուրականի Հայր. Միութեան Ֆրանսայի Կեդր. վարչութեան։

Կիրակի 14 Մայիս, Սալ Մազընօ, 88 Րիւ տօպանէը, ՄԱՐՍԷՅԼ

Հովանաւորութեամբ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ

Հանդէսին կը նախագահէ Միութեան ատենապետ Պ. ՎԱՐԴԱՆ ՊԱՆՏԻԿԵԱՆ

Տարեդարձի հանդէսին հրաւիրուած են Ազգային Կեդր. վարչութիւնը, կուսակցութեանց, կրօնական, Ցարանուանութեանց, Բարեգործականի, Մարզական եւ Հայրենակցական Միութիւններու ներկայացուցիչները։

Խօսք կը տրուի կուսակցութեանց ներկայացուցիչներուն։

Կը բանախօսէ Ամերիկայի Վասպուրականի Համա – Հայրենակցական Միութեան «Վարագ» պարբերաթերթի խմբագիր (Ամերիկայէն)

Պ. ԱՐՍԷՆ ԹԷՐԼԷՄԷԶԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին ծանօթ ու գեղարուեստասէր հայրենակիցներու կողմէ։ Կը ներկայացուի՝ «ԾՈՅԼ ԱՄՈՒՍԻՆ» զաւեշտը,

Ղեկավարութեամբ քէմանչիստ Համոյի։

Պարահանդէս ժամը 20էն մինչեւ կէս գիշեր, հանրածանօթ ՍԷՐԺ – ՔՕՐՕ նուագախումբով։ Ճոխ պիւֆէ մատչելի գիներով։

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Տէր եւ Տիկին Մարտիրոս Պօյաճեան (Փարիզէն) 50 Ն. Ֆ. կը նուիրեն Մշակոյթի Տան :

Ընկեր Տիգրան Թորոսեան, իր ընկերներու Դաշնակցական մկրտութեան առթիւ քսան Ն. Ֆ. կը նուիրէ Մշակոյթի Տան :

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապոյտ Խաչի Պօմոնի մասնաճիւղը Ս. Զատկի առթիւ այցելած ըլլալով Թիմոն, Սալվատոր, Սէնթ Մարկրիթ հիւանդանոցները եւ երկու ծերանոցները՝ Մոնթոլիվէ և Շարթռէօ նաեւ Սէնթ Աննի դարմանատունը՝ հիւանդներուն բաշխած է դրամ եւ զանազան ուտելիքներ, բարոյապէս քաջալերելով զանոնք : Այս առթիւ մասնաճիւղը իր խորին շնորհակալութիւնները կը յայտնէ այն բոլոր նուիրատուներուն որոնք սատարեցին իր ձեռնարկին :

Նոյնպէս շնորհակալութեամբ ստացած է Պ. Կէրքէրեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի Պ. Պ. Սերժ Սարգիսեանէ քսան Ն. Ֆ. եւ Ն. Քէհէեանէ 10 Ն. Ֆ., Պ. Հայկ Սալերեանէ քսանական Ն. Ֆ. դպրոցին եւ Կ. Խաչին իր կնոջ Տիկին Մ. Սալէրեանի մահուան քառասունքի հոգեհանգստեան առիթով, Պ. Քիւրտողլեանէ հինգ Ն. Ֆ. իր մօր մահուան տարելիցին առթիւ:

Նաեւ շնորհակալութեամբ ստացած է Տ. Տ. Մենուչ Պօղոսեանէ եւ Ա. Գարեգինեանէ տասնական Ն. Ֆ. եւ Պ. Ա. Հրաչեանէ հինգ Ն. Ֆ. :

×

Վարչութիւնը շնորհակալութեամբ ըստացած է Զատկուան պնակի առթիւ ընկ. Տիկին Շահպալեանէ տասը Ն. Ֆ. : Նոյնպէս շնորհակալութեամբ ստացած է Տիկին Սաթենիկ Համասեանէ Փըթի Արպուայի հիւանդներուն համար տասը Ն. Ֆ., ընկերուհի Լալաեանէ տասը Ն. Ֆ., Վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Տիկին Պէաթրիս Քարատեանէ փոխան ծաղկեպսակի տասը Ն. Ֆ. ողբացեալ Արշակուհի Եավէրի մահուան առթիւ :

×

Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ դիւանը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուիրատուութիւնները իր կրթական ձեռնարկներուն համար :

Պ. Պ. Արամ Յովհաննէսեան 10 Ն. Ֆ., Ալեքսանդր Օհանեան քսան, Տիկին Մարի Գարակէօզեանի մահուան առթիւ: Պ. Պ. Հրանդ Պալեան քսան Ն. Ֆ., Պալեան գերդաստանի հոգեհանգստեան առթիւ Ալեքսանդր Օհանեան քսան Ն. Ֆ., Ողբացեալ Զաւէն Մութաֆեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի :

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Առնուվիլլի Վարագայ Ս. Խաչ Եկեղեցւոյ հոգաբարձութիւնը իր խորին ցաւակցութիւնը կը յայտնէ Տէր Պարգեւ քհնյ. Մէրճանեանի եւ Պ. Սեդրակ Գարակէօզեանի, իրենց տիկիններուն կըսկծալի մահուան առթիւ :

## ՆՈՒԷՐՆԵՐ

Տիկին Մարի Գարակէօզեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի Պանեէօ - Քաշանի հայ եւ ֆրանսացի բարեկամներ Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ դիւանին միջոցով նուիրած են հետեւեալ բարենպատակ Միութիւններու.— 50 Ն. Ֆ. Պանեէօ - Քաշանի հայ դպրոցին, երեսուն Ն. Ֆ. Կապ. Խաչի, երեսուն Ն. Ֆ. Կարմիր Խաչի, քառասուն Ն. Ֆ. եկեղեցւոյ կրթ. ձեռնարկներու, Պ. Լեւոն Տօնիկեան տասը Ն. Ֆ. Պանեէօ - Քաշանի հայ դպրոցին :



## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Տէր Սարգիսեան (Թալոտիէր - Լուռ) եւ զաւակները, իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն, բոլոր անոնց՝ որոնք ծաղկեպսակներով, հեռագրով, նամակով եւ անձամբ ցաւակցութիւն յայտնած էին, իրենց թանկագին զաւկին՝ Ալպերին վաղահաս մահուան առթիւ:

×

Վալանսի Կապ. Խաչի մասնաճիւղի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է, Տէր եւ Տիկին Հայազատ Օհանեանէ 30 Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Մաթէոս Մաքսուտեանէ քսան Ն. Ֆ. փոխան ծաղկեպսակի ողբացեալ երէցկին Վեհանոյշ Մերճանեանի մահուան առթիւ:

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ
### ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Արձանագրութեանց համար դիմել Երկուշաբթի, Չորեքշաբթի, Ուրբաթ և Շաբաթ օրերը, ժամը 16էն 19, Կապոյտ Խաչի գրասենեակը 17 Rue Pleo : Համաձայն պետական օրէնքին կ'ընդունուին աղջիկներ՝ 6էն 14 տարեկան, մանչեր՝ 6էն 13 տարեկան :

ԿԱՊ. ԽԱՉԻ ՇՐՋ. ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Րաֆֆի» խումբի ժողովը այս Հինգշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ : Դասախօս՝ Ընկեր ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ : Նիւթ՝ Լիբանանի Հայ Գաղութը: Կը հրաւիրուին խումբերու ընկեր - ընկերուհիները:

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Երկուշաբթի ժամը 21ին, Քատէի վերնայարկը :

Պիտի խօսի նկարիչ Պ. ԺԻՐԱՅՐ ՓԱԼԱՄՈՒՏԵԱՆ :

Նիւթ՝ «Ինչ է Ազգը»:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԱԼՖՈՐՎԻԼ.— Մայիս 28ի տօնակատարութիւնը Ալֆորվիլի մէջ, Շաբաթ Յունիս 10 :

## ԾԱԽՈՒ Է

Տէսինի մէջ, մեկնումի պատճառով ծախու է խանութ մը, որ ամէն տեսակ առեւտուրի կրնայ յարմարիլ: Բնակարան, հինգ սենեակ, կառատուն եւ մթերանոց մը: Յարմար պայմաններ:

Հեռաձայնել .— 495158 (Տէսին - Իզեռի Նահանգ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Փարիզի Եկեղեցւոյ դիւանը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուիրատուութիւնները փոխան ծաղկեպսակի, Տիկին Մարի Գարակէօզեանի մահուան առթիւ, իր կրթական ձեռնարկներուն համար: Պ. Պ. Մինաս Գրիգորեան եւ Արտաշ Մկրտիչեան 10ական Ն. Ֆ.:

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը կը հրաւիրէ ծնողքները, որ օր առաջ արձանագրեն իրենց զաւակները օդափոխութեան կայանի համար:

Արձանագրութիւնները կը կատարուին ամէն Չորեքշաբթի եւ Շաբաթ օրերը, 17 Րիւ Պլէօ, մեթրօ Քատէ, ժամը 16–18 Միութեան գրասենեակը:

Համաձայն պետական օրէնքին, կ'ընդունուին միայն մանչեր 6–13 տարեկան, իսկ աղջիկներու համար 6–14: Արձանագրութիւնները կը փակուին Յունիս 15ին:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Երեւանէն Պ. Երուանդ Գալֆայեան կը փնտռէ Պ. Պ. Արշակ Մինէճեանը, որ կը բնակէր 75 Րիւ տը լա Պօլ տ'Օր, Պույյի Սիւր Սէն, Օպ, եւ Երուանդ Ճէզիրեանը, որ կը բնակէր 49 Րիւ տը Մալթ, Փարիզ (11), որոնց հետ կը թղթակցէր մինչեւ 1939 թուականը:

Նաեւ Եորքէն կը փնտռեն, Փարիզի արուարձաններուն մէջ վերջերս մեռածհանգուցեալ Յովհաննէս Սիւզմէճեանի երկու աղջիկները: Զիրենք ճանչցողներէն կը խնդրուի տեղեկացնել եկեղեցւոյ դիւանատունը 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ (8): Հեռաձայնի թիւ Էլիզէ 67–03:

Յունաստանի Գորֆու կղզիէն վերջերս Ֆրանսա եկած ծանօթ ղաստիարակ ուսուցիչ Պ. Պէզիրճեանը կը փնտռուի: Զինք ճանչցողներէն կը խնդրուի տեղեակ պահել Փարիզի Եկեղեցւոյ դիւանը:

×

Թիֆլիսէն Պ. Սուրէն Սանթուրճեան կը փնտռէ իր հօրեղբայրը Պ. Զօհրապ Յովակիմ Սանթուրճեանը որ ժամանակին ծառայած է թատրոնի եղած է երգի եւ պարի խումբի ղեկավար, եւ որ 1916 թըւականէն ի վեր Փարիզ հաստատուած է:

Երեւանէն Սաթենիկ Ռաֆայէլ Լուսինեան կը փնտռէ իր եղբայրները Արամ Արշաւիր եւ Լեւոն Լուսինեան որոնք պատերազմին գերի տարուած են Գերմանացիներու կողմէ եւ ըստ Հայաստան ներգաղթողներէ ստացուած տեղեկութիւններու այժմ Փարիզ կը բնակին:

Պէյրութէն Պ. Արթին Աղամեան կը փնտռէ Պ. Յակոբ Առաքելեանը բնիկ Խարբերդցի, որուն տիկնոջ անունն է Զարդար:

Երեւանէն Պ. Համբարձում Սողոմոնեան կը փնտռէ իր որդին Պ. Բագրատ Սողոմոնեանը որ երկրորդ պատերազմին անհետացած է: Մօր անունն է Անթառամ, քոյրերուն անունները Արաքսի եւ Անծիկ:

Հայաստանէն կը փնտռեն բնիկ Սվազցի Պալակի փողոցի բնակիչ Պ. Հրաչ Ճիվէլէկեանը որ ըստ ստացուած տեղեկութիւններու այժմ Փարիզ կը գտնուի:

Վերոյիշեալ անձերու կամ իրենց պարագաներուն մասին տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի տեղեակ պահել Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ դիւանը, 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ (8):



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՀԱՅԿ. ԲԱՅԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպուած Մարսէյլի Կապոյտ Խաչի վարչութեան կողմէ:

Բեմադրութեամբ Տիկին Ա. Պէզիր-ճեանի:

Ի նպաստ Միութեան բարենպատակ ձեռնարկներուն:

Մայիս 20, Շաբաթ ժամը 21ին, Սալ Մազընոյի սրահին մէջ, 88 Րիւ տ'Օպանեը, Մարսէյլ:

Տեղւոյս լաւագոյն ուժերու կողմէ մեծ պատրաստութեամբ պիտի բեմադրուի՝

### ՍԱՅԱԹ ՆՈՎԱ

(Ազգ. յուզիչ օփերէթ, 4 արար)

Կը ղեկավարէ քեմանչիստ ՀԱՄՕ (Սայաթ Նովա) եւ կը մասնակցին տեղւոյս լաւագոյն ուժերը.—

Օր. Մարի Սիմոնեան (Սօնայի դեր, «Արմենիա» երգչախումբէն), Ս. Պէշկէօթիւրեան (Եակոբ Աղա), դերասան Կ. Մութաֆեան (Միխօ), Գ. Թիւթէլեան (Յովսէփ Աղա), Պ. Սիսակ (Գեւօ) եւ ուրիշներ:

Պարերու եւ խնջոյքի տեսարաններուն իր մասնակցութիւնը կը բերէ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի պարախումբը:

Արեւելեան «Սազանտար» նուագախումբը կը ղեկավարէ թառիստ ՊԱՐՈՅՐ:

Դաշնակահար Պ. ԱԲԻԿ:

Մրինգ՝ Պ. ՇԻՇՄԱՆԵԱՆ:

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Այս Կիրակի, Տօն Հողեգալստեան, Գերպ. ԿԱՐԱՊԵՏ Եպիսկ. ԱՄԱՏՈՒՆԻ, առաւօտեան ժամը 10ին պիտի նախագահէ ժամերգութեան եւ ապա ժամը 10.30-ին պիտի մատուցանէ Հայրապետական ձայնաւոր պատարագ:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Հայաստանէն Մելիտոս Մեսրոպի Աբրահամեան կը փնտռէ իր որդին՝ Աբրահամեան Լիպարեթ Մելիտոսի, ծնած՝ Օշական 1921ին: Կը կարծուի որ յիշեալը Լիոնի շրջանները կը գտնուի: Տեղեկութիւն ունեցողներէն ջերմապէս կը խնդրուի գրել հետեւեալ հասցէին՝

M. Y. JAMGOTCHIAN
150, Rue de Chatou COLOMBES (Seine)





## ՏԱՐԵԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ ՎԵՆԵՏԻԿ — Ս. ՂԱԶԱՐ — ՀՌՈՄ

ԵՒ

ՇՐՋԱԿԱՅՔԸ

Շաբաթ մը ծովի կեանք՝ Հանր. Սան Մարինոյի մօտ, Ադրիականի աննման աւազին վրայ, ծովեզերեայ նորաշէն եւ հանգստաւէտ պանդոկի մը մէջ:

ՄԵԿՆՈՒՄ՝ Օգոստոս, 6

ՎԵՐԱԴԱՐՁ՝ Օգոստոս, 31

Արձանագրութեանց եւ մանրամասնութեանց համար դիմել.—

Ն. ՄԱՅԻՍԵԱՆ
45, Rue de Trévise, PARIS (9e)
Tél. : TAI. 49-40
(Գաւիթին մէջ)

Յ. ՊԱՍՄԱՃԵԱՆ
11, Avenue Béranger
ARNOUVILLE-LES-GONESSE (S. et O)

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ ՍՏԻՊՈՂԱԲԱՐ

Կը փնտռուի Գարեգին Սարիբէկեան, հօր անունը՝ Յովհաննէս: Ծննդավայրը՝ Ջաւախքի Կրայ քաղաքը, Աշխաբատ: Ծննդեան թուականն է 1925:

Ռուսաստանի Օրիոլ քաղաքին մէջ, Գերմանացիներու կողմէ բռնի կերպով կ'ուղարկուի Գերմանիա, 1942ի Ապրիլին, պարտադիր աշխատանքի: Աշխատանքի վայրն էր Պրեսլաուի գաւառներէն Շփանսպերկ:

1943ի Օգոստոսին կ'անհետանայ աշխատանքի վայրէն եւ մինչեւ այսօր անհետ կը մնայ:

Երկրորդ աշխարհամարտի լրումէն ետք, զինք տեսած են Ֆրանսայի մէջ: Կ'ենթադրուի որ փոխած ըլլայ իր անունը:

Լուր ունեցողներէն կը խնդրուի անմիջապէս տեղեակ պահել հայրը,— Երեւանի գաւառի Սեւքար գիւղէն Յովհաննէս Սարիբէկեան:

Տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի դիմել «Յառաջ»:

Ծիշդ տեղեկութիւն տուողը, փնտրուող Գարեգին Յովհաննէսի Սարիբէկեանի առաջին նամակէն յետոյ կը ստանայ կարեւոր նուէր մը:

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Րաֆֆի» խումբի ժողովը այս Հինգշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ: Դասախօս՝ Ընկեր ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ: Նիւթ՝ Լիբանանի Հայ Գաղութը: Կը հրաւիրուին խումբերու ընկեր – ընկերուհիները:

## ԵՐԵՒԱՆ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԻ ԺԱՄԵՐ

Եւրոպայի երկիրները ապրող Հայերուն համար Երեւանի ձայնասփիւռի նոր ալիքները.— Ամէն Չորեքշաբթի եւ Կիրակի առաւօտները ժամը 9ին՝ (13 – 19 եւ 25 մեթր կարճ ալիքներով):

## Կ'ՈՒԶՈՒԻ

Միջին տարիքի կին մը, տան մէջ երախայ մը խնամելու ամբողջ օրը եւ երեկոյեան ծնողքին ճաշը պատրաստելու համար: Տան մէջ բնակելու կարելիութիւն եւ լաւ վճարում:

Դիմել՝ ԱՐԵՒԵԱՆ, 13 Րիւ Ժ. Փօլ-մարէ, Լէ Լիլա, Tél. VIL, 36-47

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Պ. Համբարձում Զահրէճեան, Օր. Այտա Զահրէճեան, Տէր եւ Տիկին Արման Զահրէճեան, իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն բոլոր անոնց, որոնք անձամբ, նամակով, հեռագրով, ծաղկեպսակով, նուիրատուութիւնով մասնակցեցան իրենց սուգին

ՎԻՔԹՈՐԻԱ ԶԱՀՐէՃԵԱՆԻ

մահուան առթիւ:

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Առնուվիլ – Սարսէլի Հ. Յ. Դ. «Վարդան» ենթակոմիտէն կատարած է հետեւեալ հանգանակութիւնը, ի նպաստ Սողոմոն Թէհլիրեան սրահին:

Պ. Պ. Սողոմոն Նիկողոսեան 50 Ն. Ֆ., Հրաչ Սարգիսեան 50, Տիկիններ Անժէլ Արապեան 15 Ն. Ֆ., Արմինէ Պարաւեան, Արման Հապէշեան, Պ. Պ. Վահրամ Սանոյեան, Սեդրակ Էմմինեան, Առաքել Էսկիճեան, Տիկին Վարդանոյշ Ստանպոլեան, Եղիա Ինճէարապեան, Տօքթէօր Արթին, Օննիկ Երկանեան, Տիկին Ընծայ Ունճեան, Մառի Մենեճեան, Պ. Պ. Օննիկ Ալթունեան, Արփիար Մարտիրոսեան, Սողոմոն Կիւլէգեան, Յարութիւն Պիւճէկեան, Հայրապետ Խաչատուրեան, Ստեփան Պալեան, Նիկողոս Նիկողոսեան, Քլէման Քէսէճեան տասնական Ն. Ֆ.:

Ոմն վեց Ն. Ֆ.: Պ. Պ. Կղեմէս Պայրամեան, Յարութիւն Երկանեան, Մելքոն Շէրոյեան, Դանիէլեան, Ոմն, Ասատուր Տիլանեան, Բագդալ Երամեան, Թիպէո, Հայկ Գասպարեան, Վարդգէս Տիլանեան, Տիկիններ Վարդանոյշ Խասեան, Սիրուհի Խաչատուրեան, Գրիգոր Սարաֆեան, Գառլօ Ազեան, Տիկին Ազնիւ Նիկողոսեան, Տիկին Մառի Շիրինեան, Տէր Աղգէ Ք. Փայլակեան, Օր. Ժագլին Մարթայեան, Նորայր Քօլանճեան, Հայկ Գարապօղոսեան, Տիկին Փերուզ Զաքարեան, Կարապետ Պալանգեան, Ռոժէ Փերոտեան, Փիէռօ Տարագճեան, Յարութիւն Ճէլալեան, Գէորգ Աւագեան, Ժէօրժ Փէրոտեան, Էտուարդ Հապէշեան, Ոմն, Կարապետ Սարաֆեան, ԱնդրանիկՍէթէնճեան, Տիկին Ալիս Լեւոնեան հինգական Ն. Ֆ.:

Ընդհ. գումար 471 Ն. Ֆ.:

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ
## ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը կը հրաւիրէ ծնողքները, որ օր առաջ արձանագրեն իրենց զաւակները օդափոխութեան կայանի համար:

Արձանագրութիւնները կը կատարուին ամէն Չորեքշաբթի եւ Շաբաթ օրերը, 17 Րիւ Պլէօ, մեթրօ Քատէ, ժամը 16–18 Միութեան գրասենեակը:

Համաձայն պետական օրէնքին, կ'ընդունուին միայն մանչեր 6–13 տարեկան, իսկ աղջիկներու համար 6–14: Արձանագրութիւնները կը փակուին Յունիս 15ին:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՀԱՅԿ. ԲԱՑԱՌԻԿ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Կազմակերպուած Մարսէյլի Կապոյտ Խաչի վարչութեան կողմէ:

Բեմադրութեամբ Տիկին Ա. Պէզիրճեանի:

Ի նպաստ Միութեան բարենպատակ ձեռնարկներուն:

Մայիս 20, Շաբաթ ժամը 21ին, Սալ Մազընոյի սրահին մէջ, 88 Րիւ տ'Օպաներ, Մարսէյլ:

Տեղւոյս լաւագոյն ուժերու կողմէ մեծ պատրաստութեամբ պիտի բեմադրուի՝

## ՍԱՅԱԹ ՆՈՎԱ

(Ազգ. յուզիչ օփերէթ, 4 արար)

Կը ղեկավարէ քեմանչիստ ՀԱՄՕ (Սայաթ Նովա) եւ կը մասնակցին տեղւոյս լաւագոյն ուժերը.—

Օր. Մարի Սիմոնեան (Սօնայի դեր, «Արմենիա» երգչախումբէն), Ս. Պէշկէօթիւրեան (Եակոր Աղա), դերասան Կ. Մութաֆեան (Միխօ), Գ. Թիւթէլեան (Յովսէփ Աղա), Պ. Սիսակ (Գեւօ) եւ ուրիշներ:

Պարերու եւ խնջոյքի տեսարաններուն իր մասնակցութիւնը կը բերէ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի պարախումբը:

Արեւելեան «Սազանտար» նուագախումբը կը ղեկավարէ թառիստ ՊԱՐՈՅՐ:

Դաշնակահար Պ. ԱԲԻԿ:

Սրինգ՝ Պ. ՇԻՇՄԱՆԵԱՆ:

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Այս Կիրակի, Տօն Հոգեգալստեան, Գերպ. ԿԱՐԱՊԵՏ Եպիսկ. ԱՄԱՏՈՒՆԻ, առաւօտեան ժամը 10ին պիտի նախագահէ ժամերգութեան եւ ապա ժամը 10.30ին պիտի մատուցանէ Հայրապետական ձայնաւոր պատարագ:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Դպրոցական Տարեշրջանի փակման եւ Բարերարներու Օրը

ԿԻՐԱԿԻ՝ ՅՈՒՆԻՍ 25

Մանրամասնութիւնները յաջորդով:

## ՄԱՅՐԵՐՈՒ ՕՐ

Ալֆորվիլի Ս. Պօղոս – Պետրոս եկեղեցւոյ Հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ մայրերու տօնին առթիւ, աւանդական մատաղի օրհնութիւն, այս տարի եւս հանդիսաւորապէս պիտի կատարուի Մայիս 28, Կիրակի օր:

Բոլոր այն ուխտաւորները, որ կը փափաքին իրենց նուէրներով մասնակցիլ տօնին՝ կրնան այժմէն արձանագրուիլ Հոգաբարձութեան մօտ, որպէսզի կարելի ըլլայ օր առաջ կատարել անհրաժեշտ գնումները եւ պատրաստութիւնները:





## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. «Րաֆֆի» խումբի ժողովը այս Հինգշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան մէջ: Դասախօս՝ Ընկեր ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ: Նիւթ՝ Լիբանանի Հայ Գաղութը: Կը հրաւիրուին խումբերու ընկեր – ընկերուհիները:

## ԵՐԵՒԱՆ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԻ ԺԱՄԵՐ

Եւրոպայի երկիրները ապրող Հայերուն համար Երեւանի ձայնասփիւռի նոր ալիքները.– Ամէն Չորեքշաբթի եւ Կիրակի առաւօտները ժամը 9ին՝ (13 – 19 եւ 25 մեթր կարճ ալիքներով):

## Կ'ՈՒԶՈՒԻ

Միջին տարիքի կին մը, տան մէջ հիւանդ մը խնամելու ամբողջ օրը եւ երեկոյեան ծնողքին ճաշը պատրաստելու համար: Տան մէջ բնակելու կարելիութիւն եւ լաւ վճարում:

Դիմել՝ ԱՐԵՒԵԱՆ, 13 Րիւ Ժ. Փուլմարք, Լէ Լիլա, Tél. VIL. 36-47



## Ս. ԽԱՉ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ
## ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆԻՆ ԴԱՐԱՍՏԱՆԻՆ ՄԷՋ

Ի նպաստ իր բարեսիրական ու կրթական ձեռնարկներուն:

ԿԻՐԱԿԻ՝ ՅՈՒՆԻՍ 11

Առաւօտէն մինչեւ երեկոյ

ԼԸ ՓԷՔ

3, Avenue Grandchamp

×

Հանդիսաւոր պատարագ ժամը 11ին

Բացօթեայ հիւրասիրութիւն, ճաշ ժամը 13ին՝ ընթրիք ժամը 19ին:

Ծոխ ճաշացուցակ՝ մատչելի գիներով:

Գեղարուեստական բաժին եւ զբօսալի խաղեր:

Հաղորդակցութեան միջոցներ.—

ՇՈԳԵԿԱՌՔ՝ Սէն Լազարէն մեկնելով իջնել Սէն – Ժերմէն – ան – Լէյի կայարանը (ՈԶ Լը Փէք), առնել թիւ 258 հանրակառքը եւ իջնել էրմիթաժ:

ՀԱՆՐԱԿԱՌՔ՝ Փոն տը Նէօյիէն 258 թիւը եւ իջնել էրմիթաժ:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Մարսէյլի Պուլվար Օտտոյի Ս. Յակոբ եկեղեցւոյ Կրօն. Ընկերութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ գումարները, փոխան ծաղկեպսակի հանգուցեալ Այրի Տիկին Զարուհի Գահվէճեանի մահուան առթիւ։

Տէր եւ Տիկին Յովհ. Այվազեան 15 Ն. Ֆ. եկեղեցիին, Տէր եւ Տիկին Յարութիւն Ղազարեան 15 Ն. Ֆ. տեղւոյս դպրոցին։

× Հանգուցեալ Բիւզանդ Քէօսէեանի մահուան տխուր առթիւ Տէր եւ Տիկին Ղազարոս Կուլեան Փարիզի Մշակութային Տան Սողոմոն Թէհլիրեան սրահին եւ Սեբաստիոյ Մուրատ Ուսումնասիրացին, տասնական Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Արամ Խորանեան տասը Ն. Ֆ. տեղւոյս Նոր Սերունդին, Տէր եւ Տիկին Թովմաս Քէօսէեան տասը Ն. Ֆ. եկեղեցիին։ Այս առթիւ Կրօն. Ընկերութիւնը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ Տէր եւ Տիկին Դաւիթեանին եւ իր ընտանեկան պարագաներուն, եւ Այրի Տիկին Քէօսէեանին եւ իր զաւակներուն։

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ
### Ս Ե Ւ Ր

### 1961-1962

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՑՈՒԱԾ ԵՆ։

Իրենց զաւակները արձանագրել փափաքող ծնողքներու գործը դիւրացնելու համար կը յանձնարարենք, որ վարժարան առաջնորդեն երախան դպրոցական եւ բժշկական վկայականներով միասին։ Փարիզէն դուրս գտնուողները գրաւոր դիմումին միացնեն վերոյիշեալ վկայականները։

Պայմաններու համար դիմել՝ գրաւոր կամ հեռաձայնով.—

DIRECTION DU COLLÈGE SAMUEL MOORAT
26, Rue Troyon, SEVRES (S. et O.)
Tél. : OBS. 18-28

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ֆ. Կ. Խաչի Շրջ. վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է.— Տիկին Արմինէ Տէտէքճեանէ (Ամերիկա) հինգ տոլար իր այցելութեան առթիւ։

Տէր եւ Տիկին Անդրանիկ Պուտաքեանէ քսան Ն. Ֆ. տարաբախտ Զաւէն Մութաֆեանի կսկծալի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի։

## ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Երիտասարդուհիներու Զաւօ Շանթ խումբին դասախօսութիւնը այս Ջորեքշաբթի ժամը 20.30ին, Կապոյտ Խաչի գրասենեակը, 17, Րիւ Պլէօ։

Դասախօս՝ ՏԻԿ. ՀՈՒՐԻ ԻՓԷԿԵԱՆ-ՊՈՒՏԱՔԵԱՆ։

Կը հրաւիրուին անդամուհիներ։

## ՄԱՅՐԵՐՈՒ ՏՕՆԻՆ ԱՌԹԻՒ

Ֆ. Կ. Խաչի Սէն Լուի մասնաճիւղը կազմակերպած է հաւաքոյթ-խնճոյք մը։ Այս Ջորեքշաբթի կէսօրէ ետք ժամը 3ին։ Այս առթիւ կը հրաւիրուին թաղին բոլոր մայրերը։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Մայրամիկ Հաճիփանոսեան (Իզմիտի մերձաւոր Օվաճըգ գիւղէն) կը փնտռէ իր երկու եղբայրները, որոնցմէ բաժնուած է Սուլթանթէփէ (Ուրֆայի կողմերը) Մեծ Եղեռնին։ Մկրտութեան անուններն է Մկրտիչ եւ Կարապետ։ Տարագրութեան ընթացքին կրած են Հալապ եւ Պօղան՝ արաբական անունները։

Յուսալով որ Ուրֆայի, Հալէպի կողմերը ըլլան, իրենց մասին տեղեկութիւն ունեցողը թող բարեհաճի գրել հետեւեալ հասցէին.—

ZEROUKIAN, 5, Av. Mistral
Ste-Margueritte, MARSEILLE-9 (B. du Rh.)

Արտասահմանի թերթերէն կը խնդրուի արտատպել։

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)



ՄԱՐՍԷՅԼ.— 27 Մայիս, Շաբաթ գիշեր։
Կը նախագահէ Ընկ. Յ. ՊԱՊԻԿԵԱՆ
Կը խօսի՝ Ընկ. Ժ. ԴԱՏԱՒՈՐԵԱՆ

ԼԻՈՆԻ ՄԷՋ.—Մայիս 27, Շաբաթ գիշեր։
Կը խօսի՝ Ընկ. Ա. ՓԱՓԱԶԵԱՆ։

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ.— 27 Մայիս, Շաբաթ գիշեր։
Կը խօսի Ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

ՎԻԷՆԻ ՄԷՋ.— 28 Մայիս, Կիրակի կէսօրէ յետոյ։
ԿԸ խօսի Ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

ԼՈՆՏՈՆԻ ՄԷՋ.— 27 Մայիս, Շաբաթ գիշեր։
Կը խօսի Ընկ. Շ. ՆԱՐԴՈՒՆԻ։

ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ.— 28 Մայիս, Կիրակի կէսօրէ յետոյ։
Կը խօսի Ընկ. Յ. ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

## ՆՈՒԷՐՆԵՐ

Այրի Տիկին Բարսեղ Սերճանեան եւ զաւակները իրենց ամուսնոյն, եւ հօր մահուան առթիւ 30ական Ն. Ֆ. կը նուիրեն Ս. Թէհլիրեան սրահին, Կապոյտ Խաչին, Աղքատաղնամին եւ Համազգա-յինին: (Ստանալ «Յառաջ»էն):

×

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Այրի Տիկին Զապէլ Խոըչեան եւ զաւակները Բարսեղ Սերճանեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի 25ական Ն. Ֆ. կը նուիրեն Մոնմորանսիի Հանգստեան տան եւ Կապոյտ Խաչի օղափոխութեան կայանին: (Ստանալ «Յառաջ»էն):

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ԼԻՈՆ.— Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները: Տէր եւ Տիկին Ղազար Ղազարեանէ 15ական Ն. Ֆ. Ողբ. երիցուհի Վեհանոյշ Մերճանեանի մահուան եւ Բիւզանդ Բաբելեանի մահուան քառասունքին առթիւ: Այրի Տիկին Մ. Սէփէթճեանէ (Պոլէն) քսան Ն. Ֆ. իր որդւոյն զինուորութենէ վերադարձին առթիւ:

Տիկին Սոնիա Զաքարեանէ (Քլէռմոն-Ֆեռան) տասը Ն. Ֆ., նաեւ մահճակալի ծածկոց մը Տէր եւ Տիկին Ա. Գէորգեանէ օղափոխութեան կայանին համար:

### ՊԱԼԱՔԵԱՆ Ս. Ի ՇԻՐՄԻՆ ՀԱՄԱՐ
### Զ. ՑՈՒՑԱԿ

Սէն Ժեռմէի ազգայիններէն հաւաքուած.—

Պ. Վարդան Պանտիկեան, Վասպուրականի Հայր. Միութիւն, Պ. Պ. Գ. Շալճեան, Մ. Շամախեան, Յ. Մարգարեան, Սամուէլեան ընտանիք յիսունական Ն. Ֆ.: Տիկին Գարմելա Շալճեան, Վարպետեան եղբարք, Պ. Արշամ Պապայեան երեսունական Ն. Ֆ.: Պ. Պերճ Կարապետեան 15 Ն. Ֆ.: Տիկնայք՝ Վ. Դաւիթեան, Մ. Տապանեան, Ա. Սամուէլեան, Զարուհի Միհրանեան, Բ. Տուրղութեան, Պ. Պ. Յ. Գափլանեան, Մ. Ժամկոչեան, Յ. Սիմոնեան, Խ. Ուլուսեան, Մ. Թոգատլեան, Ս. Ինճէճեան, Մ. Գասպարեան, Պ. Յակոբեան, Կ. Կտաւճեան, Կ. Ասարլըգեան, Ս. Կիրակոսեան, Կ. Կիւլէմիրեան, Ա. Մանկասարեան, Օ. Քէօսէեան, Օ. Սարայտարեան, Կ. Մարկոսեան, Օ. Փաստըրմաճեան, Խ. Թաչճեան, Ս. Մավեան, Բ. Կիւլէսեան, Վ. Մանուկեան, Էօրտէքեան ընտանիք, Գ. Տէր Կազէրեան, Ա. Տայիկեան, Ս. Ենովքեան, Լ. Կազէլեան, , Ենովքեան եղբարք, Արտ. Անեազեան, Կ. Գալայճեան տասնական Ն. Ֆ.: Պ. Զենոբ Քէչիչեան, Զալըըճեան Տօնիկ, Լեւոն Քէսմէճեան, Ս. Մինասեան քսանական Ն. Ֆ.:

(Շար.)



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Մայրամիկ Հաճիփանոսեան (Իզմիտի մերձաւոր Օվաճըգ գիւղէն) կը փնտռէ իր երկու եղբայրները, որոնցմէ բաժնուած է Սուլթանթէփէ (Ուրֆայի կողմերը) Մեծ Եղեռնին: Մկրտութեան անուններն են Մկրտիչ եւ Կարապետ: Տարագրութեան ընթացքին կրած են Հալապ եւ Պօղան՝ արաբական անունները:

Ցուսալով որ Ուրֆայի, Հալէպի կողմերը ըլլան, իրենց մասին տեղեկութիւն ունեցողը թող բարեհաճի գրել հետեւեալ հասցէին.—

ZEROUKIAN, 5, Av. Mistral
Ste-Margueritte, MARSEILLE-9 (B. du Rh.)

Արտասահմանի թերթերէն կը խնդրուի արտատպել:

### ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Ֆ. Կ. Խաչի Երիտասարդուհիներու Ջաւօ Շանթ խումբին դասախօսութիւնը այս Չորեքշաբթի ժամը 20.30ին, Կապոյտ Խաչի գրասենեակը, 17, Րիւ Պլէօ:

Դասախօս՝ ՏԻԿ. ՀՈՒՐԻ ԻՓԷԿԵԱՆ – ՊՈՒՏԱՔԵԱՆ:

Կը հրաւիրուին անդամուհիներ:

### ՄԱՅՐԵՐՈՒ ՏՕՆԻՆ ԱՌԹԻՒ

Ֆ. Կ. Խաչի Սէն Լուի մասնաճիւղը կազմակերպած է հաւաքոյթ – խնջոյք մը: Այս Չորեքշաբթի կէսօրէ ետք ժամը 3ին: Այս առթիւ կը հրաւիրուին թաղին բոլոր մայրերը:

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

ԼԻՈՆ.— Ֆ. Կ. Խաչի Լիոնի մասնաճիւղը իր խորին ցաւակցութիւնները կը յայտնէ ընկերուհիներ Ա. Ղազարեանի եւ Ա. Աճէմեանի եւ ընտանեկան պարագաներուն, երիցուհի Վեհանոյշ Մերճանեանի եւ Սրբուհի Ադամեանի, իրենց ազգականին եւ մօր ցաւալի մահուան առթիւ:



### Կ'ՈՒԶՈՒԻ

Միջին տարիքի կին մը, ֆրանսերէն խօսող, տան մէջ ծեր մարդու մը ընկերութիւն ընելու եւ ճաշը պատրաստելու համար: Լաւ վճարում, առանց բնակութեան: Դիմել Քրքեաշարեան, 34 Պուլվար Նէյ (Փարիզ 18), մեթրօ՝ Փորթ տը լա Շափէլ:





### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Այս Շաբաթ ժամը 21էն մինչեւ լոյս, Ալհամպրայի մէջ, 340 Պուլվար Շավ:

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէի եւ մասնակցութեամբ ազգային կազմակերպութեանց:

Կը նախագահէ
ԸՆԿ. ՅԱԿՈԲ ՊԱՊԻԿԵԱՆ
Կը խօսին Ընկ. ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱՒՈՐԵԱՆ
եւ Տիկ. ՕՏԵԹ ՄԻՔԱՅԷԼԵԱՆ

Ողերձ՝ Նոր Սերունդի կողմէ
Գեղարուեստական ճոխ բաժին

Կը մասնակցին.— ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍԵԱՆ (երգ), ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆ (դաշնակ):

Ինչպէս նաեւ.— Մ. Սիմոնեան, Էխփենեան, Ս. Թիւթէլեան, Վ. Ճառայեան:

Եւրոպական պարեր

**Francis Carrias**

Ընտանեկան ջերմ մթնոլորտ յարակից սրահներուն մէջ:

Խօսնակ.— Ընկ. Կ. Յարութիւնեան:

ՃՈԽ ՊԻՒՖԷ

### ԼՈՆՏՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նաւասարդեան ենթակոմիտէի:

Այս Շաբաթ կէսօրէ ետք ժամը 6.30ին:

Կը խօսի Շ. ՆԱՐԴՈՒՆԻ:

Գրական – գեղարուեստական ճոխ յայտագիր:

Հասցէ.— Քուինզ Հոլ, Թաուն Հոլ, Իլինկ, (Լոնտոն):

ԼԻՈՆԻ ՄԷՋ.— Յունիս 3, Շաբաթ գիշեր:

Կը խօսի՝ Ընկ. Ա. ՓԱՓԱԶԵԱՆ:

ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ.— 27 Մայիս, Շաբաթ գիշեր:

Կը խօսի Ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

### ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Րիւ Ժէի սրահը:

Կը նախագահէ Ընկ. ՆՇԱՆ ՊԵՏՐՈՍԵԱՆ

Կը խօսի Ընկ. Յ. ԵՂԻԱԶԱՐԵԱՆ

Երգ՝ Օր. Անժէլ Կարապետեան (Լի… երաժշտանոցէն):

ՎԻԷՆԻ ՄԷՋ.— 28 Մայիս, Կիրա… կէս օրէ յետոյ:

Կը խօսի Ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ

ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Յունիս 4ին:

Կը խօսի Ընկ. Պ. ՋՊՈՒՔՃԵԱՆ





Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՅԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ

ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՍԵՒՐԱՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ

Ի ՆՊԱՍՏ

Փարիզի Մշակոյթի Տան եւ Կապոյտ խաչի օդափոխութեան կայանին

*Կը նախագահեն Պ. Պ. ՔՈԼԼԱՎԵՐԻ (Թաղապետական խորհրդատու և Լիվրի-Կարկանի քաղաքապետ) եւ ԹՈՒԹԷՆ (Սեւրանի քաղաքապետ)*

Կիրակի 4 Յունիս, Լիվրի – Կարկանի քաղաքապետարանի սրահին մէջ

*Մասնակցութեամբ Սօսի պարախումբին, ղեկավարութեամբ* Տիկ. ՔԻՒԹՆԷՐԵԱՆԻ

*Նուագախումբ՝ ՊԵՐՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆ*

*Հաղորդակց. միջոցներ.—* էկլիզ Փանթէնէն առնել 147 թիւ օթօպիւսը *եւ իջնել* Մէրի տը Լիվրի Կարկան :

*Կը հրաւիրուի Փարիզի եւ արուարձաններու Հայութիւնը :*

Մուտք 4 Ն. Ֆ.

### ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՊԱՏԱՐԱԳ ԱԼՖՈՐԻՎԻ Ս. ՊՕՂՈՍ – ՊԵՏՐՈՍ ԵԿԵՂԵՑՒՈՅ ՄԷՋ

*Այս Կիրակի Մայրերու տօնին առթիւ հանդիսաւոր պատարագ կը մատուցանէ եւ կը քարոզէ Հայրապետական Պատուիրակ*

*ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆ*

*Այս առթիւ Ուրբաթ երեկոյ եկեղեցւոյ շրջափակին մէջ տեղի ունեցաւ օրհնու – թիւնը ութ մատաղցու ոչխարներու, որ Կիրակի Ս. պատարագէն յետոյ, իբրեւ աւանդական հոգեճաշ պիտի բաշխուի հաւատացեալ ժողովուրդին :*

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ ԵՒ ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*ՄԱՐՍԷՅԼ.— Թորիկեան ընտանիքները խորին շնորհակալութիւններ կը յայտնեն Մարբերդի Հայր. Միութեան, ինչպէս նաեւ բոլոր այն հայրենակիցներուն, ո – րոնք գրաւոր կամ անձամբ յարգեցին՝ ողբացեալ ՏԻԿԻՆ ԺՈԶԷՖԻՆ ԽԱՉԱ – ՏՈՒՐԵԱՆԻ յիշատակը :*

*Այս առթիւ կը ծանուցանեն թէ ողբաց – եալին մահուան քառասունքին առթիւ, հոգեհանգիստ պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ Փրատոյի Մայր Եկե – ղեցին : Կը հրաւիրուին ողբացեալին յի – շատակը յարգողները :*

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Տիկին Մարիամ (Էրզրումաբնակ) կը փնտռէ իր եղբայրը : Անունը՝ Յուսուֆ,* արհեստով նալպանտ, *մօրը՝ անունը Աս – լի, հօրը անունը՝ Մելքոն, 1915ի աքսո – րէն քանի մը ամիս առաջ Էրզրումէն մեկ – նած են Թրքական արտօնագրով* (վէսի – քա) *Թողով քոյրը՝ Մարիամ Թուրք ըն – տանիքի մը մօտ : Ներկայիս Փա – րիզ է, Լուր ունեցողներէն գրել՝ Յա – ռաջ»ին :*

*Կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել :*

Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

### ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

*Լսարանի յաջորդ հաւաքոյթը այս Եր – կուշաբթի ժամը 21ին՝ Քաւէի վերնա – յարկը :*

*Պիտի խօսի գրագէտ ԶԱՐԵՀ ՈՐԲՈՒ – ՆԻ, որ նոր վերադարձած է Ճափոն կա – տարած իր ճամբորդութենէն :*

*Նիւթն է՝* «Ճափոն, այնպէս ինչպէս որ տեսայ ամսուան մը ընթացքին» :





## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ

### 43-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

27 Մայիս, Շաբաթ երեկոյ ժամը 8·30ին, 6րդ թաղամասի քաղաքապետարանի շքեղ սրահներուն մէջ

**Place Saint-Sulpice — Métro Saint-Sulpice**

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ ԸՆԿ. ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼ

ԿԸ ԽՕՍԻՆ ԸՆԿ. ԱՇՈՏ ԽՍԱՀԱԿԵԱՆ

*Ինչպէս նաեւ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Կեդր. վարչութեան եւ Ուսանողական Միութեան ներկայացուցիչները :*

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԽՆԱՄՈՒԱԾ ԲԱԺԻՆ

*Կը մասնակցին* Օր. Ֆարշիեան՝ *ձայն– պատկերասփիւռի Ա. մրցանակ (դաշ – նակ)*, Օր. Շ. Պէնկեան եւ Ա. Քիւփէլեան՝ *(երգ)*, Օր. Ա. Թարոն, Ժ. Աչըկեօզ – եան եւ Ճերահեան *(մենապար եւ զոյգ* պար*)*, Նահապետեան քոյրեր՝ *(երգ)*, Ընկ. Հապէշեան *(արտասանութիւն) եւ քառեակ մը որ պիտի նուա – գէ ազգային եւ ժողովրդական երգեր :*

*Կէս գիշերէն կը սկսին եւրոպական պարերը :*

**ROBERTO SETO vedette des disques "Vogue"**

*Նուագախումբին առաջնորդութեամբ :*

*Առատ եւ ճոխ պիւֆէ դիւրամատչելի գիներով :*

*Խօսնակ՝ Ընկ. Ե. ԳՐԻԳՈՐԵԱՆ* Մուտք 5 Ն. Ֆ.

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

*Այս Շաբաթ ժամը 21էն մինչեւ լոյս,* Ալհամպրայի *մէջ*, 340 Պուլվար Շավ :

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Մար – սէյլի Շրջ. կոմիտէի եւ մասնակցու – թեամբ ազգային կազմակերպութեանց :*

*Կը նախագահէ*
*ԸՆԿ. ՅԱԿՈԲ ՊԱՊԻԿԵԱՆ*

*Կը խօսին Ընկ. ԺԻՐԱՅՐ ԴԱՏԱՒՈՐԵԱՆ եւ Տիկ. ՕՏԷԹ ՄԻՔԱՅԷԼԵԱՆ*

Ուղերձ՝ Նոր Սերունդի կողմէ

Գեղարուեստական ճոխ բաժին

*Կը մասնակցին.— ՄԿՐՏԻՉ ՊՕՂՈՍ – ԵԱՆ (երգ), ԿԱՐՊԻՍ ԱՓՐԻԿԵԱՆ (դաշ – նակ) :*

*Ինչպէս նաեւ.—* Մ. Սիմոնեան, էքէր – եան, Ս. Թիւթէլեան, Վ. Ճառայեան :

Եւրոպական պարեր

**Francis Carrias**

*Ընտանեկան ջերմ մթնոլորտ յարակից սրահներուն մէջ :*

*Խօսնակ.—* Ընկ. Կ. Յարութիւնեան : *ՃՈԽ ՊԻՒՖԷ*

### ՎԻԷՆԻ ՄԷՋ

*Կազմակերպութեամբ՝* Վիէնի Հ. Յ. Դաշնակցութեան կոմիտէի, *մասնակցու – թեամբ* Նոր Սերունդի, Կապոյտ խաչի, Հ. Մ. Ը. Մ.ի, Հայ Կամաւորներու եւ Մարտիկներու եւ հայրենակցական միու – թեանց :

*Այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին*, Սէրքլը Քաթոլիք սրահին մէջ :

*Կը նախագահէ Ընկ. ԱՐԱԳ ԼՈՒՍԱ – ՐԵՒԵԱՆ :*

*Կը խօսի Ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ*

*Գեղարուեստական ճոխ բաժին կարող ուժերու կողմէ : Կը նուագէ* Օր. Նազե – նիկ Զաքարեան :

*Երգ, արտասանութիւն եւ կենդանի պատկեր մը՝* Նոր Սերունդի *կողմէ :*

*Մուտքը ազատ է :*

### ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

3 Յունիս, Շաբաթ գիշեր :

*Կը խօսի Պ. ՁԳՈՒՔՃԵԱՆ*

### ԿՐԸՆՈԲԼԻ ՄԷՋ

*Այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին*, Րիւ Ժէի սրահը :

*Կը նախագահէ Ընկ. ՆՇԱՆ ՊԵՏՐՈՍԵԱՆ*

*Կը խօսի Ընկ. Յ. ԵՂԻԱԶԱՐԵԱՆ*

*Երգ՝* Օր. Անժէլ Կարապետեան *(Լիոնի երաժշտանոցէն)* :

### ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի, մասնակցութեամբ Նոր Սե – րունդի :*

Այս Շաբաթ իրիկուն, ժամը 20·30ին, Քաղաքապետարանին թատրոնին մէջ :

*Կը նախագահէ Ընկ. ԱՐՄԵՆԱԿ ԳՈՒ – ՑՈՒՄՃԵԱՆ (Սէն Շամոնէն) :*

*Կը խօսի Ընկ. Ժ. ՄԻՐԻՃԵԱՆ*

*Գեղարուեստական բաժնին իրենց մաս – նակցութիւնը կը բերեն.—*

*ԵՐԳ.—* Տիկին Սիրարփի Փըրզիկեան, Օր. Էլիզապէթ Սարգիսեան :

*ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ.—* Օր. Խաչիկեան, Ս. Պօյաճեան, Շահինեան, Փըրզիկեան *(Նոր Սերունդ)* :

*ՆՈՒԱԳ (զոյգ կիթառ).—* Ղազարոս – եան, Շահինեան *(Նոր Սերունդ)*, Պ. Շա – ւարշ Պօյաճեան *(Նոր Սերունդ)* :

*Ջաւէշտ մը Ռոմանի խումբէն, ղեկա – վարութեամբ դերասան* Քէփէնէկեանի :

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Յունիս 4ին :

*Կը խօսի Ընկ. Պ. ՁԳՈՒՔՃԵԱՆ*

### ՓՈՐՏՈՅԻ ՄԷՋ

4 Յունիս, Կիրակի կէսօրէ ետք :

*Կը խօսի՝ Ընկ. ՀՐԱՉ ՀԱՆՏԱՃԵԱՆ*

### Կ'ՈՒԶՈՒԻ

*Հայ կին մը, շուրջ* 60 *տարեկան, տա – րեց տիկնոջ մը ընկերութիւն ընելու եւ միասին բնակելու համար՝ Փարիզի մեր – ձաւոր արուարձանի մը մէջ : Լաւ վար – ձատրութիւն :*

*Գրել «Յառաջ»ի, որ պիտի փոխանցէ :*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Սեբաստիոյ նահանգի Մուրատ Ուսումնասիրացը իր խնձոյքին առթիւ ստացած է հետեւեալ նուէրները.— Պ. Յակոբեան հարիւր Ն. Ֆ., Գ. Ալիքսանեան 30, Տոքթ. Պօղոսեան, Եղօ Մինասեան, Սուքիաս Պապիկեան, Փանոսեան, Տէր եւ Տիկին Ղուկասեան, Աւ. Սրապեան, Թոքատի Հայր. Միութիւն քսանական Ն. Ֆ., Երանոս Մանուկեան 15 Ն. Ֆ., Տիկին Գարճեան, Տէր եւ Տիկին Ամիրխանեան, Տիկին Ղուկասեան, Տէր եւ Տիկին Գրիգորեան, Տէր եւ Տիկին Թովմասեան, Յար. Շիրվանեան, Տէր եւ Տիկին Թարոն, Ս. Շահինեան, Ղազար Դանիէլեան տասնական Ն. Ֆ.:

## ՆՈՒԷՐ

Տիկին Աղաւնուհի Թորգոմեանի (ծընեալ Թէրզիպաշեան) մահուան առթիւ, Ինճեճեան եւ Գէորգեան ընտանիքները, փոխան ծաղկեպսակի յիսուն Ն. Ֆ. կը նուիրեն Աղքատախնամին: Ստանալ «Յառաջ»էն:



Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Լսարանի յաջորդ հաւաքոյթը այս Երկուշաբթի ժամը 21ին՝ Քաթէի վերնայարկը:

Պիտի խօսի գրագէտ ԶԱՐԵՀ ՈՐԲՈՒՆԻ, որ նոր վերադարձած է Ճափոն կատարած իր ճամբորդութենէն:

Նիւթն է՝ «Ճափոն, այնպէս ինչպէս որ տեսայ ամառուան մը ընթացքին»:

## ԿՈՉ

Իսիի, Պիյանքուրի, Պուլոնեի, Մէօտոնի, Վանվի, Մալաքոֆի եւ Քլամարի Հայութեան

Սիրելի հայրենակիցներ,

Անհրաժեշտութիւն մը դարձած էր Փարիզի կեդրոնին մէջ ունենալ Հայ Մշակոյթի Տուն մը, ուր կարելի ըլլար կեդրոնացնել այս լոյս քաղաքի ազգային եւ մտաւորական ամէն կարգի աշխատանքները:

Այսօր այլեւս իրականութիւն դարձած է ինչ որ ծրագիր էր երէկ:

Կեդրոնական յանձնախումբը Փարիզի հայաշատ թաղամասին մէջ (17 Րիւ Պլէօ) գնած է քառայարկ շէնք մը եւ իւրաքանչիւր յարկը յատկացուած որոշ նպատակի մը:

Վերաշինուած են երեք սահներ, ուր արդէն իսկ տեղի կ'ունենան դասախօսութիւններ, լսարաններ, եւ հաւաքոյթներ:

Կաթիլ կաթիլ ստացուած գումարները հնարաւորութիւն տուած են շէնքի գնման եւ վերանորոգման:

Սակայն տակաւին կան լրացուցիչ աշխատանքներ, ինչպէս՝ լուացարաններ, կեդրոնական ջերմութիւն, լրացած յարկաբաժիններու կահաւորում, եւայլն, որոնց համար տակաւին բաւական գումարներու կարիք կայ:

Որպէսզի մեր շրջանը իր պատուաւոր բաժինը բերէ այս ձեռնարկին, կազմեցինք հանգանակիչ յանձնախումբ մը եւ ներկայիս կոչ կ'ուղղենք մեր շրջանի Հայութեան ազգային զգացումներուն, որպէսզի իւրաքանչիւրը իրեն համար նուիրական պարտականութիւն նկատէ սիրայօժար մասնակցելու սոյն կարեւոր նպատակին:

Յանձնախումբիս անդամները պիտի դիմեն մեր շրջանի բոլոր ազգայիններուն, եւ վստահ են որ ձեռնարկը մօտիկ ըլլալով բոլորի սրտին եւ իւրաքանչիւրը պիտի ուզէ իր բաժինը ունենալ անոր յաջողութեան մէջ:

Հայ Մշակոյթի Տունը ոչ միայն դաւութիւ պատիւ բերող ձեռնարկ մըն է, այլ նաեւ կոչուած է սրճարաններու անկիւններէն փրկելով իր սեփական Տան մէջ հաւաքել հայ երիտասարդութիւնը:

Իսիի հանգանակիչ յանձնախումբ

## ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ
### ՕԴԱՓՈԽՈՒԹԵԱՆ ԿԱՅԱՆ

Այս տարի Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլիէի օդափոխութեան կայանի բացումը տեղի պիտի ունենայ Յուլիս չորսին: Արձանագրութեան համար դիմել Հայ Կարմիր Խաչի Կեդրոնատեղին, 15 Րիւ ժան Կուժօն, Փարիզ, Երկուշաբթի եւ Ուրբաթ առաւօտները. ժամը 10–12:



## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ
### 43-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ
### ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէին, մասնակցութեամբ Հայ. Ազգ. Միութեան, Կապոյտ Խաչին եւ Նոր Սերունդին:

Այս Շաբաթ երեկոյ, ժամը 20.30էն մինչեւ լոյս:

**Hôtel d'Europe, Place Bellecour**

Կը խօսի Ընկ. ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ.—

Կը մասնակցին.— Օր. Օր. Ս. Կարապետեան, Ա. Յարութիւնեան, Պ. Մ. Չափարեան (արտասանութիւն), Օր. Անժել Կարապետեան (Լիոնի Երաժշտանոցէն մեներգ) եւ Նոր Սերունդի երգչախումբը

Պարերը կը սկսին ժամը 23ին:

Օրուան խօսնակ՝ Ընկ. Կ. ՅՈՎԱԿԻՄԵԱՆ

Մուտք 3 Ն. Ֆ.

### ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Սէն Շամոնի Վարուժան կոմիտէի, եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Վարդգէս խումբին:

Յունիս 3ին, Շաբաթ ժամը 20.30ին, Ժան տ'Արք սրահին մէջ:

Կը նախագահէ՝ Ընկեր ԱՐՄԵՆԱԿ ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ

Կը խօսի՝ Ընկ. ՊԵՏՐՈՍ ՉՊՈՒՔՃԵԱՆ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ.— Երգ, արտասանութիւն, նուագ:

Մուտքը ազատ է

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Յունիս 4ին:

Կը խօսի Ընկ. Պ. ՉՊՈՒՔՃԵԱՆ

×

### ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

4 Յունիս, Կիրակի կէսօրէ ետք:

Կը խօսի՝ Ընկ. ՀՐԱՉ ՀԱՆՏԱԼԵԱՆ

×

### ՍԱՐՍԷԼ – ԱՌՆՈՒՎԻԼ

Վարդան ենթակոմիտէն կը տօնէ Յունիս 3, Շաբաթ երեկոյ:

Մանրամասնութիւնները յաջորդով:

## ՅԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ
### ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ
### ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՍԵՒՐԱՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ
### Ի ՆՊԱՍՏ

Փարիզի Մշակոյթի Տան եւ Կապոյտ Խաչի օդափոխութեան կայանին

Կը նախագահեն Պ. Պ. ՔՈԼԼԱՎԵՐԻ (Թաղապետական խորհրդատու և Լիվրի-Կարկանի քաղաքապետ) եւ ԹՈՒԹԷՆ (Սեւրանի քաղաքապետ)

Կիրակի 4 Յունիս, Լիվրի – Կարկանի քաղաքապետարանի սրահին մէջ

Մասնակցութեամբ Սօսի պարախումբին, ղեկավարութեամբ Տիկ. ՔԻՒԹՆԷՐԵԱՆԻ

Նուագախումբ՝ ՊԵՐՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆ

Հաղորդակց. միջոցներ.— Էկլիզ Փանթէնէն առնել 147 թիւ օթօպիւսը եւ իջնել Մէրի տը Լիվրի Կարկան:

Կը հրաւիրուի Փարիզի եւ արուարձաններու Հայութիւնը:

Մուտք 4 Ն. Ֆ.

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Պ. Մ. Առաքելեան քսան Ն. Ֆ. կը նուիրէ Ս. Թէհլիրեան սրահին, Մասիս Ժամկոչեանի յիշատակին: (Ստանալ «Յառաջ»էն):

### ԹԷՅԱՍԵՂԱՆ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Սէն Ժերոմի մասնաճիւղին կողմէ:

Այս Շաբաթ երեկուն ժամը 21էն մին-չեւ կէս գիշեր Սէն Ժերոմի եկեղեցիին կից սրահին մէջ:

Ջերմ մթնոլորտ եւ հաճելի անակնկալներ:

Սիրով կը հրաւիրուին ընկերուհիներ ի-րենց ընտանիքներով եւ բոլոր Թաղեցի-ները անխտիր:

## ՆՈՒԷՐ

Պ. Գրիգոր Դաւիթեան կը նուիրէ քսան Ն. Ֆ. Պանեէօ Քաչանի կրթական մարմ-նոյն Տիկին Մարի Գարակէօզեանի մահ-ուան առթիւ, փոխան ծաղկեպսակի:

### ՀԱՆԴԷՍ – ՀԱՑԿԵՐՈՅԹ

Հ. Բ. Ը. Միութեան Փարիզի մասնա-ժողովը կազմակերպած է Միութեան 55րդ տարեդարձին առթիւ, հանդէս-հացկերոյթ մը, որ տեղի պիտի ունենայ Յունիս 11, Կիրակի կէս օրին, Լա Վա-ռէն, «Օ Շաթօ տէ գ'Իլ»ի հաճելի շրջա-վայրին մէջ:

Սեղաններու թիւը սահմանափակ ըլլա-լով, կը խնդրուի կանուխէն արձանագր-ուիլ, լեցնելով հետեւեալ կտրոնը եւ զայն ղրկելով մեր հասցէին, առ առաւելն մին-չեւ Յունիս 2ը:

Union Générale Arménienne de Bienfaisance
11, Square Alboni, Paris (16e)
TRO. 03.18

ՃԱՇԱԳԻՆ 25 Ն. Ֆ.:

(Վճարում կարելի է ընել դրամատան կամ փոստի չէքով):

Paris C. 8019-72

Վճարումը ստացուելէ յետոյ կը ղրկուի մասնակցութեան տոմսերը եւ Շաթօ տէ գ'Իլի հաղորդակցութեան միջոցները ցոյց տուող փլանը:

Անուն եւ մականուն

Հասցէ

Մասնակցողներու թիւ

### ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ

Պանեէօ Քաչանի տարեվերջի դպրոցա-կան հանդէսը այս Կիրակի ժամը 3ին, Պանեէօյի ֆրանսական դպրոցի սրահին մէջ (Սալ Բրեօ):

Կը նախագահէ Պ. ԼԵՒՈՆ ՏՕՆԻԿԵԱՆ

Զափահաս աշակերտները պիտի ներ-կայացնեն

ՉԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ

Երգ, պար, արտասանութիւն եւ զա-նազան հաճելի անակնկալներ, ղեկավա-րութեամբ ուսուցչուհի Տիկին Հռիփսիմէ Պալըգճեանի:

Տոմսերը ապահովել կանուխէն:

### ԵՐԵՒԱՆ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԻ ԺԱՄԵՐ

Եւրոպայի երկիրները ապրող Հայե-րուն համար Երեւանի ձայնասփիւռի նոր ալիքները.— Ամէն Չորեքշաբթի եւ Կիրա-կի առաւօտները ժամը 9ին՝ (13 – 19 եւ 25 մեթր կարճ ալիքներով):

### ՊԱՏԱՐԱԳ ՇԱՒԻԼԻ ՄԷՋ

Այս Կիրակի Շաւիլի եկեղեցիի անուան տօնակատարութեան առթիւ հանդիս. Ս. Պատարագ պիտի մատուցուի:

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Համախարբերդի Մարսէյլի մասնաճիւ-ղի տարեկան դաշտահանդէսը Յուլիս 9ին, Զոխուրեանի ագարակը:

### ՀՐԱՒԷՐ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

Լիոնի եւ շրջակայից Ազգ. Միութեան կեդր. վարչութիւնը կը հրաւիրէ Լիոնա-հայ գաղութը, ընդհ. ժողովի Յունիս 4-ին, Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին, Ազ-գային Տան մեծ սրահը:

ՕՐԱԿԱՐԳ.— 1. — Հաւաքական հրա-ժարական Ազգ. Միութեան Կեդր. վար-չութեան: 2.— Համարատուութիւն տասնամեայ գործունէութեան, նիւթա-կան եւ բարոյական: 3.— Կազմութիւն ընտրողական յանձնախումբի եւ հաշուե-քննիչ մարմնի: Կը յանձնարարուի այս առթիւ ըլլալ կարգապահ եւ մանաւանդ ճշդապահ:

Ի դիմաց Լիոնի եւ Շրջակայից Ազգ. Միութեան Կեդր. վարչութեան
Ա. ատենադպիր Յ. ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ
Բ. ատենապետ Հ. ՔԻԹԱՊՃԵԱՆ





Imprimerie Spéciale du journal « Haratch »
32, Rue de Trévise, PARIS (9e)

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹԵԱՆ 43-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Վարանդեան կոմիտէին, մասնակցութեամբ Հայ. Ազգ. Միութեան, Կապոյտ խաչին եւ Նոր Սերունդին:

Այս Շաբաթ երեկոյ, ժամը 20.30էն մինչեւ լոյս:

**Hôtel d'Europe, Place Bellecour**

Կը խօսի Ընկ. ԱՌԼԷՆ ՓԱՓԱԶԵԱՆ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ.—

Կը մասնակցին.— Օր. Օր. Ս. Կարապետեան, Ա. Յարութիւնեան, Պ. Մ. Զափարեան (արտասանութիւն), Օր. Անժել Կարապետեան (Լիոնի Երաժշտանոցէն, մեներգ) եւ Նոր Սերունդի երգչախումբը

Պարերը կը սկսին ժամը 23ին:

Օրուան խօսնակ՝ Ընկ. Կ. ՅՈՎԱԿԻՄԵԱՆ

Մուտք 3 Ն. Ֆ.

### ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Սէն Շամոնի Վարուժան կոմիտէի, եւ մասնակցութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Վարդգէս խումբին:

Յունիս 3ին, Շաբաթ ժամը 20.30ին, Ժան տ'Արք սրահին մէջ:

Կը նախագահէ՝ Ընկեր ԱՐՄԵՆԱԿ ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ

Կը խօսի՝ Ընկ. ՊԵՏՐՈՍ ԶՊՈՒՔՃԵԱՆ

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ԲԱԺԻՆ.— Երգ, արտասանութիւն, նուագ:

Մուտքը ազատ է

×

### ՍԱՐՍԷԼ – ԱՌՆՈՒՎԻԼ

Վարդան ենթակոմիտէն կը տօնէ Յունիս 3, Շաբաթ երեկոյ:

Մանրամասնութիւնները յաջորդով:

### ԻՍԻԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. «Զաւարեան» կոմիտէին եւ մասնակցութեամբ տեղւոյս Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Խանասոր խումբին:

Այս Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 5էն մինչեւ 10, Խրիմեան դպրոցին մէջ, 2 Րիւ տը լա Տէֆանս:

Կը խօսի Ընկ. ԺԻՐԱՅՐ ՄԻՐԻՃԵԱՆ

Գեղարուեստական բաժին, ընտանեկան ջերմ մթնոլորտ: Առատ կերուխում, ճաշագին 10 Ն. Ֆ.: Մուտքը ազատ է:

×

### ՊՈՐՏՈՅԻ ՄԷՋ

4 Յունիս, Կիրակի կէսօրէ ետք:

Կը խօսի՝ Ընկ. ՀՐԱՉ ՀԱՆՏԱԼԵԱՆ

×

### ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Յունիս 4ին:

Կը խօսի Ընկ. Պ. ԶՊՈՒՔՃԵԱՆ

## ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆ
### Լ Ը Փ Է Ք

ԲԱՑՈՒԱԾ ԵՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ
1961 – 1962
ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻՆ

Ուսման ծրագիրն է դասական ընթացք (քուր քլասիք):

Պայմաններու եւ որեւէ լուսաբանու-թեան համար դիմել գրաւոր կամ հեռա-ձայնով վարժարանի տեսչութեան:

École Apostolique Arménienne
3, Av. de Grandchmp
LE PECQ (S. et O.) Tél. 963-01-72

## Հ. Յ. Դ.

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. Վարանդեան կոմի-տէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերնե-րը այս Ուրբաթ, ժամը 20.30ին, 101 Ա-վընիւ տը Սաքսի սրճարանի ներքնասրա-հը: Կարեւոր օրակարգ:

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԿԱՊ. ԽԱՉԻ Կրընոպլի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս Կիրակի ժամը 15.30-ին, դպրոցի սրահին մէջ: Կարեւոր օրա-կարգ: Կը խնդրուի ընկերուհիներէն ճըշ-դապահ ըլլալ:

## ՑԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ
ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ՍԵՒՐԱՆԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ
Ի ՆՊԱՍՏ

Փարիզի Մշակոյթի Տան եւ Կապոյտ խաչի օդափոխութեան կայանին

Կը նախագահեն Պ. Պ. ՔՈԼԼԱՎԵՐԻ (Թաղապետական խորհրդատու և Լիվրի-Կարկանի քաղաքապետ) եւ ԹՈՒԹԷՆ (Սեւրանի քաղաքապետ)

Կիրակի 4 Յունիս, Լիվրի – Կարկանի քաղաքապետարանի սրահին մէջ

Մասնակցութեամբ Սօսի պարախումբին, ղեկավարութեամբ Տիկ. Քիւթնէրեանի

Նուագախումբ՝ ՊԵՐՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆ

Հաղորդակց. միջոցներ.— Էկլիզ Փան թէնէն առնել 147 թիւ օթօպիւսը եւ իջնել Մէրի տը Լիվրի Կարկան:

Կը հրաւիրուի Փարիզի եւ արուարձաններու Հայութիւնը:

Մուտք 4 Ն. Ֆ.

## Ս. ԽԱՉ ԸՆԿԵՐԱԿՑՈՒԹԵԱՆ
## ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

ՀԱՅ ԸՆԾԱՅԱՐԱՆԻՆ ԴԱՐԱՍՏԱՆԻՆ ՄԷՋ

Ի նպաստ իր բարեսիրական ու կրթական ձեռնարկներուն:

ԿԻՐԱԿԻ՝ ՅՈՒՆԻՍ 11
Առաւօտէն մինչեւ երեկոյ
ԼԸ ՓԷՔ
3, Avenue Grandchamp

×

Հանդիսաւոր պատարագ ժամը 11ին

Բացօթեայ հիւրասիրութիւն, ճաշ ժամը 13ին՝ ընթրիք ժամը 19ին:

Ծոխ ճաշացուցակ՝ մատչելի գիներով:

Գեղարուեստական բաժին եւ զբօսալի խաղեր:

Հաղորդակցութեան միջոցներ.—

ՇՈԳԵԿԱՌՔ՝ Սէն Լազարէն մեկնելով իջնել Սէն – Ժերմէն – ան – Լէյի կայարանը (ՈՉ Լը Փէք), առնել թիւ 258 հանրակառքը եւ իջնել Էրմիթաժ:

ՀԱՆՐԱԿԱՌՔ՝ Փոն տը Նէօյիէն 258 թիւը եւ իջնել Էրմիթաժ: